

# ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԾԱՌՈՒՂԻՆ

*ՄԻՔԱՅԵԼ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

*Նկ. Մ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ*

Այստեղ է կռվել փոքրիկ Կիրյուշան՝
Սապուն-Գարայի արնոտ լանջերին.
Որոտում էին ռումբերը դաժան,
Սևաստոպոլ էր խուժում թշնամին...
Նրա մայրն ընկավ, եղբայրը ընկավ,
Ընկերներն ընկան մարտում կատաղի:
Եվ ջոկատի մեջ պարտիզանական
Մի մարտիկ դարձավ խիզախ պատանին:
Երբ Նախիմովի շիրիմի առաջ
Երդվեցին նրանք մինչև մահ կռվել,
Սևաստոպոլը նորից կյանք առած
Կանչում էր նրանց՝ — Առա՜ջ, ընկերնե՜ր...
Սևաստոպոլում գրոհի անցան.
Կիրյուշան ինքն էր դրոշը տանում.
Հաղթության սուրը շողշողաց պայծառ
Լենինի անվան այս պողոտայում...
Եվ պատերազմը խեղդվեց ծովի մեջ,
Ծագեց արևը լույս խաղաղության,
Վիրավորվել էր մարտերում այն բեժ
Եվ առողջացել նորից Կիրյուշան:
Այժմ հետք չկա մարտերի անցած.
Այս պողոտայում ծառեր կան դալար.
Ծառեր են նրանք, բե՞ կանաչ արձան
Ամեն մի զոհված մարտիկի համար...
Պիոներական ջոկատն է տնկել՝
Սապուն-Գարայից մինչև Կիլենբուխտ,
Ու Նախիմովի շիրիմից վերև
Փնջվել է ահա մի պերճ ծառախումբ:
Սա խաղաղության ծառուղին է նոր,
Զմրուխտ գոտին է Սևաստոպոլի,
Մեծացել է և Կիրյուշան այսօր,
Կապիտան է նա ձկնորսանավի...
Պիոներական ջոկատների հետ
Հանդիպում է նա կանաչ ծառուղում,
Եվ պատմում ինչպես այս ծառերի տեղ
Դիրքեր էր փորված Սևաստոպոլում...
— Այս տնկիները մարտերից ծնվել
Ու մեծացել են մեր աչքի առաջ,
Տեսե՛ք, ինչպես են ծառուղի դարձել,
Տարածել իրենց ճյուղերը կանաչ:
Պիոներները լսում են նրան.
Խաղաղությամբ է շնչում ծառուղին,
Արևն է շողում քաղաքի վրա,
Սևաստոպոլը ծաղկում է կրկին:

Կոմունիստական պարտիայի գործի պայքարին եղի՛ր պատրաստ



# ՊԱՏԱՆԻ ՊԻՈՆԵՐԻ ՀԱՆԴԻՍԱՎՈՐ ԽՈՍՏՈՒՄԸ







**«ԵՍ, ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ՊԱՏԱՆԻ ՊԻՈՆԵՐՍ, ԻՄ ԸՆԿԵՐՆԵՐԻ ԱՌԱՋ ՀԱՆԴԻՍԱՎՈՐ ԽՈՍՔ ԵՄ ՏԱԼԻՍ ՀԱՎԱՏԱՐԻՄ ԼԻՆԵԼ ԼԵՆԻՆԻ ՊԱՏԳԱՄՆԵՐԻՆ, ԱՄՈՒՐ ԿԱՆԳՆԵԼ ՄԵՐ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԳՈՐԾԻ ՀԱՄԱՐ, ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ՀԱՂԹԱՆԱԿԻ ՀԱՄԱՐ: ԽՈՍՏԱՆՈՒՄ ԵՄ ԱՊՐԵԼ ԵՎ ՍՈՎՈՐԵԼ ԱՅՆՊԵՍ, ՈՐ ԴԱՌՆԱՄ ԻՄ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅՐԵՆԻՔԻ ԱՐԺԱՆԱՎՈՐ ՔԱՂԱՔԱՑԻ»:**













Կոմունիստական պարտիայի գործի պայքարին եղի՛ր պատրաստ




№ 6

ՀՈՒՆԻՍ

1954 Թ. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 26-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԵՎ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

**Առաջին քննությունը:**

Ֆոտո՝ Նեմրուքի

# ԳՈՒՐԳԵՆԻ ՀԻՆԳԸ

Լ. ՄԵՀՐԱԲՅԱՆ

Նկ. Վ. ԿԱԺՈՅԱՆԻ

Երրորդ դասի սկիզբն էր։ Վեցերորդ դասարանում կատարյալ լռություն էր տիրում։ Աշակերտները ստուգողական գրավոր ունեին հանրահաշվից։ Երիտասարդ ուսուցչուհի Գոհար Գրիգորյանը կանգնել էր սեղանի մոտ և մերթ աշակերտներին էր նայում, մերթ գրատախտակին։ Աշակերտներն արդեն արտագրել էին օրինակները և լարված մտածում էին։ Միայն Գուրգենն էր, որ շարունակ դես ու դեն էր նայում։ Նա հետևում էր ուսուցչուհու բոլոր շարժումներին։ Եվ երբ ընկեր Գոհարը պատուհանից մի պահ դուրս նայեց, Գուրգենը կիսաձայն դիմեց իր առջևում նստած Վանիկին.

— Չես ամաչո՞ւմ, դու էլ կասես՝ ընկեր



Մեկ էլ նա աղերսալի հայացքով ետ նայեց։

եմ... Ահա քեզ թուղթ, լուծումը մանր տառերով գրիր ու մի կերպ ինձ տուր։

Վանիկը գլխով բացասական նշան արեց։

— Չեմ կարող, չեմ հասցնի... այսպես երբեք չեմ դժվարացել։

— Չմոռանաս, Վանի՛կ, լա՛վ, կտեսնե՛ս,— սպառնաց Գուրգենը։

— Գուրգե՛ն, ի՞նչ պատահեց քեզ... գոնե մի անգամ ինքնուրույն աշխատիր,— ասաց ուսուցչուհին։

Գուրգենը տեղից վեր թռավ, ապա նստեց ու սկսեց գրել։ Բայց թե ինչ էր գրում, ինքն էլ չգիտեր։ Մեկ էլ նա աղերսալի հայացքով ետ նայեց։ Դասարանի ամենաուժեղ աշակերտներից մեկը՝ Սահակը ժպտաց ու գլխով հավանության նշան արեց։ Գուրգենն աշխուժացավ։

Դասի կեսն անցել էր։ Սահակն իր գործը վերջացրել էր։ Նա ծծանի վրա գրում էր Գուրգենի պատվերը։ Սահակի ծծանը թաքուն հասավ Գուրգենին։

— Լսեցեք, տղանե՛ր. ովքեր լուծել են օրինակները, թող մի անգամ էլ ստուգեն,— ասաց ընկեր Գոհարը։

Աշակերտները մեկը մյուսի հետևից հանձնեցին իրենց գրավորները։ Սահակը, տետրը հանձնելուց հետո դուրս եկավ դասարանից։ Դասատուն նայեց ժամացույցին։

— Մնում է հինգ րոպե,— հայտարարեց նա։

Գուրգենն արտագրում էր Սահակի լուծած օրինակը. արտագրում էր առանց հասկանալու, մեքենաբար։ Նա միայն ուզում էր շուտ հանձնել տետրն ու դուրս թռչել, ընկերների մոտ պարծենալ...

Միևնույն ժամանակ նա աչքի տակով նայում էր Վանիկին։ Վանիկի ծոծրակին քրտինքի կաթիլներ էին փայլում, իսկ ճակատին ու երեսին թանաքի բծեր կային։

— Քեզ այդպես էլ հարկավոր է. ինձ չօգնեցիր, հիմա պատժվիր,— կիսաձայն ասաց Գուրգենը։

Բոլորից ուշ աշխատանքը հանձնեց Վանիկը։

***

Երբ հինգշաբթի օրը երկրորդ դասի զանգը հնչեց և ընկեր Գոհարը տետրերի մի կապոց ձեռքին, դուրս եկավ ուսուցչանոցից, Գուր-





գենն իսկույն դասարան վազեց ու հայտնեց ընկերներին.

— Տղանե՛ր, տետրե՞րը, հանրահաշվի տետրե՞րը...

Դասարանն աշխուժացավ։ Աշակերտներն ուզում էին տեսնել իրենց աշխատանքի արդյունքները։

Ուսուցչուհին մտավ դասարան։ Աշակերտներն իսկույն ոտքի ելան։ Բոլորն էլ լուռ էին, բայց երեսուն սիրտ անհանգիստ բաբախում էին, երեսուն զույգ կրակոտ աչքեր ուզում էին թափանցել տետրերի էջերն ու տեսնել...

Ընկեր Գոհարը թեթև ժպտաց ու գլխի աննշան շարժումով բարևեց աշակերտներին։ Տղաները նստեցին։

Վերջապես բոլորն ստացան իրենց տետրերը։

Գուրգենը երջանիկ էր։ Նրա ուրախությանը չափ չկար, բայց արտաքուստ ցույց չէր տալիս։ Նստել էր շատ լուրջ։ Նա չէր շտապում բանալ տետրը։ Ինչ ասել կուզի, որ նրա գրավորի տակ պետք է բազմած լիներ կարմիր թանաքով գրված մի մեծ հինգ։ Քիչ հետո նա որոշեց ու սկսեց կամաց-կամաց բանալ տետրը։

Եվ հանկարծ բնազդաբար ձեռքը ետ քաշեց։ Կարծես էլեկտրական հոսանքը խփեց նրան։ Գրավորի տակ հինգի տեղ գրված էր մի ահագին մեկ։

Գուրգենը կարծես կախված մնաց օդում։ Այս ի՞նչ է... ինչո՞ւ... ինչպե՞ս թե...

Երբ նա ուշքի եկավ, նայեց իր առջևում նստած Վանիկին, ապա նրա տետրին։ Վանիկի գրավորը տեղ-տեղ ջնջված ու նորից էր գրված։ Իսկ դասատուն գրավորի տակ նշանակել էր հինգ։

«Սա թյուրիմացություն է,—մտածեց Գուրգենը,— գուցե այդ իմ հի՞նգն է թռել ու մտել Վանիկի տետրը»։

Վերջապես նա մատ բարձրացրեց։

— Ի՞նչ ես ուզում, Գուրգեն,— հարցրեց ընկեր Գոհարը։

— Ընկե՛ր Գրիգորյան, ես օրինակը ճիշտ եմ լուծել։ Աշխատանքս գրված է մաքուր ու խնամքով՝ դուք ինձ մեկ եք նշանակել։ Իսկ Վանիկը, տեսեք, ինչպես է խզմզել, նրան...

— Դու քո մասին խոսիր, Գուրգե՛ն։ Ես



— ...Դուք ինձ մեկ եք նշանակել։

դիտմամբ ոչինչ չասացի. ուզում էի ինքդ խոստովանես...

Գուրգենը թերթեց, թերթեց տետրն ու լռեց։

— Լավ, Գուրգեն,— շարունակեց ուսուցչուհին,— ասա տեսնեմ, մեր դպրոցը քանի՞ հարկանի է...

— Չորս,— ասաց Գուրգենն ու զարմացած նայեց իր շուրջը։

Ընկեր Գոհարը շարունակեց.

— Իսկ դու կարո՞ղ ես երկրորդ հարկից, առանց երրորդ հարկը հասնելու, բարձրանալ չորրորդ հարկ։

— Իհարկե՝ ոչ։

Ուսուցչուհին լրջորեն դիմեց դասարանին.

— Ասացեք խնդրեմ, Պետրոսյան Գուրգենն առանց երրորդ հարցը լուծելու, ի՞նչպես է թռել հասել վերջին չորրորդ հարցին ու լուծել օրինակը։ Իհարկե, նա արտագրել է այդ։ Գուրգե՛ն, նստիր, դասից հետո կգաս ինձ մոտ։

Աշակերտներն իրենց սուր հայացքը ուղղեցին Գուրգենին, իսկ Գուրգենը ճոճվելով նստեց։ Նա ամոթահար թաքցրեց իր տետրը։

# ԽՆՁՈՐԸ

*ՍՈՒՐԵՆ ՄՈՒՐԱԴՅԱՆ*

Համիկն ու Մարոն ցնցուղներն առան
Եվ ուրախ-ուրախ ծաղկանոց մտան:
Սակայն Համիկը ոչ մի գործ չարեց.
Իր ցնցուղը նա կանաչին դրեց,
Ու թիթեռների խաղով հիացած,
Ընկավ դես ու դեն՝ գործը մոռացած:
Հոգնեց, ծուլացավ, կանաչին նստեց.
Եվ Մարոն մենակ գործը ավարտեց...
Երբ աշխատանքից մայրը տուն դարձավ,
Կարմիր խնձորներ տվեց երկուսին,
«Նրանց» կատարած գործով հիացավ
Ու հայրիկին էլ պատմեց այդ մասին:
Մարոն իր բաժին խնձորը կերավ.
Համիկը լուռ է, ոչինչ չի ուտում.
Խնձորն էլ դրել սեղանի վրա,
Ոչ լաց է լինում և ոչ էլ ժպտում:
Ի՞նչ է պատահել արդյոք Համիկին.
Նրա համար է Համիկը տխրել,
Որ թեև նա չի օգնել քույրիկին,
Բայց մայրիկն իրեն խնձոր է տվել:

# ՈՉ ՀԱՋՎԱԳՑՈՒՏ ՆՇԱՆ

(Հատված «Կարմիր և կապույտ փողկապներ» վիպակից)

*Մ. ԱՐՄԵՆ*

*Նկ. ՀՈՎՀ. ՇԱՎԱՐՇԻ*

*Սկաուտապետի*) հայտնվելուց առաջացած լռությունը տևեց միայն մի կարճ պահ: Երկու հարյուր քառասունվեց սկաուտ միանգամից «ուռա» բղավեցին և սկսեցին վեր նետել իրենց գլխարկները: Նվագախումբը վեր ցատկելով նստարանների վրայից, խառնիխուռն կանգնած, սկսեց անդադար տուշ նվագել:*

*Սկաուտապետը խրոխտ քայլերով առաջ եկավ և լուռ կանգնած, սպասեց բացականչությունների ավարտվելուն: Նրա շունը մազաչափ չանհանգստանալով խլացուցիչ աղմուկից և նույնիսկ լուրջ բանի տեղ չդնելով այդ ամենը, չափավոր վազքով սկսեց անցնել մի սկաուտից մյուսը և իր մեջքը դեմ անել նրանց՝ շոյել տալու համար:*

*Օվացիաներն արդեն համարելով բավարար, սկաուտապետը սուլիչը տարավ բերանը, սուլեց: Մի վայրկյանում լռություն տիրեց:*

*— Ջոկատ առ ջոկատ շարքի՛,— հրահանգեց սկաուտապետը:*

*Սկաուտական շիլաշփոթի միջից իսկույն սկսեցին կղզիանալ բոլոր չորս գույնի ժապավեններն առանձին-առանձին, «սևերն» ու «սպիտակներն» առանձին: Որպես հավաքման վայրերի նշանացույցեր, իրարից հավասար հեռավորության վրա բարձրացան կարմիր, կապույտ, կանաչ, դեղին և երկու սպիտակ դրոշակները: Դրանց միջև, նույնպես իրարից հավասար հեռավորության վրա, ցցվեցին խմբակների եռանկյունի դրոշիկները՝ համապատասխան գույներով, գազանների, գիշատիչ թռչունների, վայրի կենդանիների գլուխներով:*

*Հազիվ երեք րոպե տևեց սկաուտների զատումն ըստ ջոկատների և խմբակների: Նվագախումբն արդեն կանգնել էր շարասյան գլխակողմում: Նվագողները մատները նվագարանների ստեղունների վրա դրած, ծրնծղայի ափսեն, թմբուկի հաստագլուխ թակը և նվագապետական փայտիկը բարձրացրած, քար լռության և անշարժության մեջ արդեն պատրաստ էին թնդացնել քայլերգի առաջին հնչյունը:*

*Սկաուտանոցի դռնից դուրս վազեց առաջին ջոկատապետ Գասպարը, ձեռքին՝ ամերիկյան մի մեծ դրոշ՝ սկաուտանոցի գլխավոր դրոշը: Վազելով նա բաց արեց դա և անցավ ամբողջ շարասյան գլուխը: Բոլորն*

**) Սկաուտ—բուրժուական պատանեկան կազմակերպության անդամ, սկաուտապետ — կազմակերպության գլխավորը:*

սպասում էին «պատրաստ», «աջ դարձ» և ապա՝ «քայլ առաջ» հրահանգներին։

Սկաուտապետը ոտքերի ծայրերի վրա ետ-ետ գնալով, բղավեց հնչուն ձայնով.

— Պատ...

— Սպասիր, Վահա՛ն...

Հրահանգը կիսատ մնաց Քիրազի բերանում։ Երկու հարյուր քառասունվեց սկաուտ նայեցին մի կողմ։

Շնչակտուր, թեժ կրակի պես կարմրած, քիթն ու հաստլիկ ծխամորճը փափխտացնելով, մորակը թևից կախ, ոտք առած տակառի նման մոտ վազեց միստր Սմիտը։

— Սպասի՛ր... — կրկնեց նա։

Վահան Քիրազը բղավեց.

— Պատվի...ա՛ռ...

Սկաուտները պատիվ տվեցին ամերիկացուն։

Առանց նրանց վրա ուշադրություն դարձնելու, Սմիտը մոտեցավ Վահան Քիրազին և բարկացած սկսեց նրա հետ ինչ-որ բան խոսել անգլերեն։ Անգլերեն հասկանում էին համարյա բոլոր սկաուտները։ Այդ լեզուն պարտադիր ավանդվում էր դպրոցներում։ Բայց Սմիտը խոսում էր զայրույթից խզված կիսաձայնով և ոչ ոք, բացի սկաուտապետից, նրա ասածներից ոչինչ չհասկացավ։

Քիրազի շունը, որն ըստ երևույթին լավ բարեկամության մեջ էր ամերիկացու հետ, իսկույն մոտ վազեց նրան և հաղթելով իր ծուլությունը, սկսեց արտակարգ աշխուժությամբ լիզել-լպստել նրա ձեռքը։ Բայց Սմիտը նրանով զբաղվելու տրամադրություն չուներ։ Բարձրացնելով մորակը, նա շառաչով իջեցրեց շան գլխին և ուսին։ Քար լռության մեջ տարածվեց երկար ժամանակ չըլռող կաղկանձն ու վնգստոցը։ Սկաուտապետի սիրտը ճմլվեց, բայց նա չհամարձակվեց նույնիսկ նայել շանը, մանավանդ այդպիսի կարևոր խոսակցության ժամանակ։

— Ինձ համար է եկել... — վախեցած շշնջաց Հրաչն իր մոտ կանգնած Ութսունիննի ականջին։

— Հիմար... — բաց թողեց Ութսունիննը ատամների արանքից՝ չհավատալով նրան։

— Ետ դա՛րձ... — հանկարծ և անսպասելի հնչեց սկաուտապետի զայրացած հրահանգը։

Երկու հարյուր քառասունվեց սկաուտ մեջքները շուռ տվեցին դեպի Քիրազն ու Սմիտը։

— Մինչև գոտկատեղը մերկանա՛լ,— լըսվեց երկրորդ, ավելի կատաղի, բացի Հրաչից և Ութսունիննից՝ բոլորի համար անհասկանալի հրահանգը։

— Տեսա՞ր,— շնչասպառ շշնջաց Հրաչը։

Անմիջապես գետին նետվեցին շուռ տված



Սկաուտներից շատերը... արդեն մերկացել էին։

նավակի ձև ունեցող սպիտակ գլխարկները, ապա կապույտ փողկապները։ Սկաուտներն սկսեցին քանդել վերնաշապիկների կոճակները։

— Ջոկատապետները՝ նույնպես, նվագողները՝ նույնպես,— լսվեց Սմիտի ձայնը։ — Բոլորը, բոլո՛րը։

Սկաուտներից շատերը, այդ թվում նաև Ութսունիննը, արդեն մերկացել էին. իսկ Հրաչը գլխարկը գետին նետելուց և փողկապը կիսով չափ արձակելուց հետո այլևս տեղից չէր շարժվում։

Հանկարծ Ութսունիննը արձակեց շալվարի վրա կապած իր գոտին, թեև դրա կարիքը

չկար, և անսպասելիորեն շուռ գալով դեպի Հրաչը, երկտակ արած գոտիով շրխկոցով խփեց նրա ցավող ուսին։

— Իսկ դու ի՞նչ ես դանդաղ շարժվում, անպիտա՛ն,— տիրապետող լռության մեջ բղավեց նա ընկերոջ վրա.— Ինչո՞ւ ես ուշացնում պարոն սկաուտապետին։

Հրաչը գալարվեց ուսի վրա հասցված այդ նոր հարվածից և ապշած, չռված աչքերով նայեց ընկերոջը. բայց Ութսունինը չէր էլ նայում նրան։ Հաճոյակատար ժպիտը երեսին, նա դիմեց սկաուտապետին։



— Գտա՛, եռ դարձիր, սրիկա՛...

— Ներեցեք ինձ, պարոն սկաուտապե՛տ...

— Ոչի՜նչ, ոչի՜նչ, դու ճիշտ վարվեցիր,— ասաց Վահան Քիրազը Ութսունինի արարքից գոհ։

— Պատրա՞ստ եք բոլորդ։ Ապա, անշարժ կանգնե՛լ...

Քիրազն ու Սմիտը մոտեցան դետնի վրա թափթփված ոսկեդեղին նվագարաններին և ուշադիր նայելով նվագող սկաուտների մերկ մեջքներին, սկսեցին դանդաղ անցնել նրանց շարքերի երկայնքով։

Նվագողների մեջքները մաքուր էին։ Բայց հազիվ հասած առաջին ջոկատի առաջին շարքերին, միստր Սմիտը բղավեց.

— Գտա՛, եռ դարձիր, սրիկա՛...

Եռ դարձավ խեղճ դեմքով մի նիհար մի սկաուտ, որի մեջքի վրա Սմիտը նկատել էր հարվածի մի սև, լայն բիծ։

— Սա՞ էր,— հարցրեց Քիրազն ամերիկացուն։

— Դեմքը չեմ հիշում,— բղավեց նա,— բոլոր հայերդ նման եք իրար. չի կարելի տարբերել։ Բայց մտրակի հետքն իմն է։

— Ներեցեք, մի՛ստր Սմիտ,— մեջ ընկավ Գասպարը, նույնպես կիսամերկ, ամերիկական դրոշակը ձեռքին,— այդ ես եմ ծեծել... Դաստիարակչական նպատակով...

Սմիտը, որը անձամբ ճանաչում էր Գասպարին և, իհարկե, հավատում նրան, բարկացած հարձակվեց ծեծված սկաուտի վրա։

— Իսկ ինչո՞ւ ես լռում, սատ՛ր ծնունդ...

— Մի՛ստր Սմիտ,— վախից դողալով ասաց ծեծվածը,— չէ՞ որ մեր սկաուտական պատվիրանը մեզ թույլ չի տալիս մատնել մեր պետերին։

— Ապրե՜ս,— ասաց միստր Սմիտը, ապա դարձավ դեպի Քիրազը,— սկաուտական պատվիրանը պահելու համար տուր նրան մի շոկոլադ։ Բայց լռելու և ինձ չպատասխանելու համար՝ եռ վերցրու այդ շոկոլադը նրանից...

Եվ իր արդար դատաստանից ու սրամտությունից գոհ, նա շարունակեց քայլել Քիրազի հետ։

Գասպարը, որը դրոշակը ձեռքին գալիս էր ամերիկացու հետևից, ցույց տվեց իր ջոկատի զանազան մասերում գտնվող յոթ-ութ մեջքեր և ասաց.

— Սրանցից և ոչ մեկը, մի՛ստր Սմիտ։ Սրանք բոլորը դաստիարակչական նպատակով են արված...

Երկրորդ ջոկատում հարվածների ու ծեծի հետքեր հայտնաբերվեցին ընդամենը հինգ մեջքի վրա։ Դրանցից երկուսը ջոկատապետ Լևոնի «դաստիարակման» պտուղներն էին, մեկը նախշել էր մրգերի պահեստի պահեստապետը՝ երբ սկաուտը փորձել էր այնտեղից մի բուռ չիր թռցնել։ Վստահելի մի քանի սկաուտ, որ այդ ժամանակ

պահեստի խորքում նստած միրգ ուտելիս են եղել, հաստատեցին այդ: Մնացած երկու սկաուտին հարվածել էր Վահան Քիրազն ինքը, երկու օր առաջ, երբ պատահաբար դուրս գալով իր սենյակից, տեսել էր, թե ինչպես նրանք ճաշից հետո ափսեները ձեռքներին մոտեցել էին ճաշ բաժանողին՝ մի ափսե ևս խնդրելու:

Երրորդ ջոկատում հարվածի հետք կար միայն Հրաչի ուսին: Ո՛չ Քիրազը, ո՛չ Սմիթը նրա վրա ուշադրություն չդարձրին, նրանք կարծեցին, թե դա արեց Ուիթսոնինը քիչ առաջ:

— Շնորհակալություն, Ուիթսոնի՛ նն, շընորհակալություն, սիրելի՛ս, դու ինձ փրկեցիր,— շշնջաց Հրաչը, երբ Քիրազն ու Սմիթն անցան դեպի չորրորդ ջոկատը:

— Լռի՛ր, հիմա՛ր,— ատամների արանքից բաց թողեց Ուիթսոնինը:— Մի՛ մոռանա, որ լեզուն ուտելիքը խառնելու համար է, թիակի պես մի բան...

Չորրորդ ջոկատի երեք մեջքներից ոչ մեկն այն չէր, ինչ որ փնտրում էր միստր Սմիթը: Դրանցից երկուսը ջոկատապետ Մամիկոնի աշխատանքն էր, իսկ երրորդը՝ Սմիթինը, բայց ուրիշ առիթով կատարած:

Ամերիկացին կանգ առավ հինգերորդ ջոկատի միակ կապտած մեջքի դեմ: Տեղի ունեցավ բուռն խոսակցություն: Կապտած մեջքի տերը, գունատ դեմքով մի սկաուտ, համարյա արտասվելով, անդադար կրկնում էր անգլերեն.

— Հարցրեք միսիս Ցայնին, մի՛ստր Սմիթ, սխր նա ինքն արեց այդ մի ժամ սրանից առաջ, գրասենյակային քանոնով, հարցրեք միսիս Ցայնին, սկաուտական ազնիվ խոսք եմ ասում, հարցրեք միսիս Ցայնին, երդվում եմ ամերիկական դրոշակի վեց անգամ ութ՝ քառասունութ աստղերով...

Վերջապես Սմիթը համոզվեց և անցավ վերջին՝ վեցերորդ ջոկատին: Բայց այնտեղ կապտել կամ սևացել էին միայն բռնակիր սկաուտ-բանվորների ուսերն ու մեջքները՝ ծանր արկղներից և այլ բեռներից:

Սմիթը կանգ առավ մոլորված և սկսեց նայել շուրջը՝ կարծես ստուգելու համար, թե չի՞ մնացել այլևս ոչ ոք: Մնացել էին միայն Վահան Քիրազը և նրա շունը, որի ուսի փայլուն մորթու վրա դեռ երևում էր մտրակի երկարավուն հետքը:

Սմիթը թքեց զայրացած ու հեռացավ:

— Հագնվե՛լ, սրիկանե՛ր,— հրահանգեց սկաուտապետը,— հագնվե՛լ, ստո՛ր ծնունդներ...



## ԱՆՄՈՌՈՒԿԸ

### ՀՌԻՓՍԻՄԵ ՊՈՂՈՍՅԱՆ

Դալար այգու ստվերում,
Ուր խոտերն են օրորվում,
Ուր առվակն է խոխոջում,
Անմոռուկն է բողբոջում:

Բացած կապույտ աչիկը,
Վեր է ձգվում ծաղիկը,
Եվ շուրջերով ցողաքաց
Շշնջում է ճիացած.

— Ի՜նչ կապույտ է երկինքը,
Ինչքա՜ն ջերմ է շողիկը,
Շուրջս աշխարհն է փրթել,
Պայծառ ամառ է արդեն...

# ՃՈՃԱՆԱԿԻ ԵՐԳ

ՌՈՒԲԵՆ ՂԱՐԻԲՅԱՆ

Նկ. Ա. ՋԱՔԱՐՅԱՆԻ



Ա՛յ ճոճանակ, ճոճանակ,
Գնա, արի շարունակ,
Իջիր ներքև, ելիր վեր
Մեզ քո գրկում տար ու բեր:

Սուրիկն արդեն վախ չունի,
Նա նման է թռչունի,
Թևերն օդում տարածում,
Ճոճվում է, երգ ասում:

Աշոտիկը փոքր է դեռ,
Երբ որ դառնա ինժեներ,
Ու ցած նայի մեծ շենքից,
Չի սարսափի բարձունքից:

Արա՛մ, դու էլ եկ նստիր,
Գուցե դառնաս նավաստի.
Երբ փոքրիկ բարձրանա,
Ծովում դու չես վախենա:

Ա՛յ ճոճանակ, ճոճանակ
Գնա, արի շարունակ,
Իջիր ներքև, ելիր վեր
Մեզ քո գրկում տար ու բեր:

---

# ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅԱՆ ԱԼԲՈՄԸ

Ս. ՍԱՐԳՍՅԱՆ

Ֆոտո՝ Հ. ՀԵՔԵՔՅԱՆԻ

*Երևանի Աբեղյանի անվան դպրոցի պիոներական սենյակում, կարմիր մահուդով ծածկված փոքրիկ սեղանի վրա, խնամքով պահվում է մի գեղեցիկ պատկերազարդ ալբոմ: Մի անգամ, հավաքույթից առաջ, երբ առաջին ջոկատի պիոներները զգուշությամբ թերթում էին ալբոմը, Մարգոն ասաց.*

*— Աղջիկնե՛ր, եկեք մեր ալբոմին տանք «Բարեկամության ալբոմ» անունը:*

*Եվ այդ օրվանից դպրոցում հայտնի դարձավ բարեկամության ալբոմը:*

*Ահա բացում ենք այդ ուշագրավ ալբոմը: Առաջին էջի վրա գեղեցիկ տառերով գրված է «Մեր հեռավոր ընկերներից ու բարեկամներից ստացված նամակներ»: Այստեղ իրար հետևից դասավորված են զանազան գույնի նկարներով ու դրոշմանիշերով նամակներ: Դրանց հեղինակները երեխաներ են, մեր անծայրածիր Հայրենիքի, ժողովրդական դեմոկրատիայի երկրների, տարբեր ազգությունների տղաներ ու աղջիկներ: Նրանցից շատերը դեռևս չեն ճանաչում իրենց հասցեատերերին, բայց գրում են հարազատի ու մտերմի ջերմ զգացումներով:*

*Մի նամակում պիոներուհի Վերա Կովտունը պատմում է իր հայրենի քաղաքի բարեկարգման մասին:*

«Գոգոլը Միրգորոդի մասին գրել է՝ «Քաղաքի կենտրոնում կա մի մեծ ջրափոս»։ Այժմ Պոլտավայի մարզի Միրգորոդ քաղաքը անճանաչելիորեն փոխվել է. հայտնի ջրափոսի տեղը կանգնած է շրջգործկոմի մեծ շենքը։ Մեր քաղաքում կան բազմաթիվ գործարաններ, նորակառույցներ, զբոսայգիներ, կուլտուրայի և արվեստի օջախներ։ Մենք հաճախ էքսկուրսիաներ ենք կազմակերպում դեպի քաղաքի տեսարժան վայրերը»։

Այնուհետև Վերան պատմում է 1949 թվականին Միրգորոդում վրացական ականավոր բանաստեղծ Դավիթ Գուրամիշվիլու գերեզմանի վրա կառուցված հուշարձանի մասին, որը դարձել է ժողովուրդների բարեկամության խորհրդանիշ։ «Գուրամիշվիլին,— գրում է Վերան,— երկար տարիներ ապրել է Ուկրաինայում, սիրել է մեր երկիրը, նրա զավակների հետ միասին հերոսաբար մարտնչել է օտարերկրյա նվաճողների դեմ։ Ուկրաինական ժողովուրդը մեծ սիրով է պահում վրաց ժողովրդի հայրենասեր զավակի պայծառ հիշատակը»։

Նամակի հետ միասին Վերան ուղարկել է գունատիպ նկարներ։

Շատ նամակներում պատանի պիոներները պատմում են իրենց հարազատ դպրոցի, ուսման մեջ ձեռք բերած հաջողությունների և ընկերասիրության մասին։

«Սիրելի VII դասարանցիներ,— Տուլայից գրել է Դիանա Զաստոստոպովան.— ես սովորում եմ VII դասարանում և ուզում եմ պատմել, թե ինչպես որոշեցի մեխանիկ դառնալ։ Ես շատ գրքեր եմ կարդում։ Ինձ անչափ դուր են գալիս սովետական բանաստեղծների ու արձակագիրների երկերը։ Երբ ես կարդացի Ա. Գայդարի մանկական պատմվածքները, որոշեցի անպայման գրող դառնալ։ Բայց վերջերս մի հետաքրքիր դեպք պատահեց և ես վերջնական ընտրություն կատարեցի։ Մեր ջոկատը էքսկուրսիա էր գնացել քաղաքի մեխանիկական գործարաններից մեկը։ Ինձ հիացրեց հսկայական հաստոցների առջև կանգնած խառատ աղջիկների աշխատանքը։ Այդ մասին ես նույնիսկ գրեցի մի բանաստեղծություն։ Ես պետք է մեխանիկ դառնամ՝ որոշեցի ես»։

Դիանայի նամակը մեծ հետաքրքրություն առաջացրեց 2-րդ ջոկատի պիոներների շրջանում։ Նրանք գրեցին.

«Մենք ուսուցիչների հետ միասին էքսկուրսիա կազմակերպեցինք դեպի քաղաքի էլեկտրատեխնիկական, Ձերժինսկու անվան հաստոցաշինական, քիմիական գործարանները, եղանք Շահումյանի շրջանի Ի. Վ. Ստալինի անվան կոլտնտեսությունում... Մեր պիոներներից շատերը որոշել են յոթնամյակն ավարտելուց հետո ընդունվել գյուղմեխանիզացիայի, հիդրոմելիորատիվ, քիմիկո-տեխնոլոգիական և լեռնային տեխնիկումները...»։



Պիոներները ձևավորում են «Բարեկամության ալբոմը»։

Բարեկամության ալբոմում բավական ուշագրավ է «Ժողովրդական դեմոկրատիայի երկրներից ստացված նամակներ» բաժինը։

Այստեղ նամակներ կան թե՛ հայերեն, և թե՛ ռուսերեն։ Պարզ են այդ նամակների տողերը, սակայն նրանց մեջ զգացվում է Սովետական Միության պիոներների օրինակով ապրելու, սովորելու, դժվարությունները հաղթահարելու կամքը։

*Բուլղարիայի Կոլարովգրադ քաղաքից VI դասարանի աշակերտուհի Վիոլետա Խորդանովան գրել է.*

*«...Օրավուր բարեփոխվում և գեղեցկանում է մեր քաղաքը։ Մենք, պիոներներս ակտիվ մասնակցություն ենք ցուցաբերում քաղաքի վերակառուցման աշխատանքներին, կազմակերպում ենք շաբաթօրյակներ, մասնակցում ստադիոնների, սպորտային հրապարակների կառուցման աշխատանքներին»։*

*Սովետական Միության նկատմամբ Բուլղարիայի հայ մանուկների անհուն սերն է արտահայտված Սոֆիայի Սուրեն Սպանդարյանի անվան դպրոցի 4-րդ դասարանի աշակերտուհի Թագուհի Տարիքուլյանի գրած նամակում։*

*«Մինչև Պուլկարիո ազատագրումը,—գրում է Թագուհին,— գերմանո-ֆաշիստական լուծին տակ մեր հայկական դպրոցների վիճակը շատ ծանր էր։ Ֆաշիստական կառավարությունը կճնշեր ազգային փոքրամասնությունները։ Իսկ հիմա, շնորհիվ համայնավար կուսակցության և սոցիալիստական կառավարության, բոլորովին բարելավվեցավ մեր վիճակը։ Ան մեծ հոգ կտանե մեր առողջության, կրթության ու երջանկության համար, որին փոխարեն մենք ալ տքնաջան կաշխատինք մեր դասերուն մեջ՝ գերազանցիկներ ըլլալու... Այսպես սիրելի ընկեր, ապրելով գեղեցիկ Սոֆիա մայրաքաղաքին մեջ մենք միշտ կհիշենք մեր Երևանը, որուն երջանիկ բնակիչներն եք նաև դուք։ Որքա՜ն երջանիկ ենք մենք և դուք, որ կապրինք այնպիսի դարաշրջանում, երբ կկերտվի բոլորիս երջանկությունը։ ...Գրիր, սիրելի ընկեր, քո մասին և մեր սիրելի Հայաստանի մասին, կխոստանամ անհապաղ պատասխանել քո անուշ նամակին»։*

*Գնալով ավելի են ամրապնդվում և ընդլայնվում Երևանի Մ. Աբեղյանի անվան դպրոցի պիոներների կապերը ռուս, ուկրաինացի, բուլղար, հայ, լատիշ, և այլ ազգությունների երեխաների հետ։ Դպրոցի պիոներներն արդեն կազմում են բարեկամության երկրորդ ալբոմը։*

---

## ԱՇՈՏԻ ՆԿԱՐԸ

*ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱԶՅԱՆ*



Մեր Աշոտն այս առավոտ
Նկարեց մի հավ ու սագ,
Ու խնդրեց ինձ՝ նրանց մոտ
Բուն նկարեմ ծառի տակ:
Ես էլ, ինչու՝ չգիտեմ,
Կատակելով հենց այնպես,
Այդ բոլորի փոխարեն
Նկարեցի մի աղվես:
Նկարեցի և ճանկած,
Երբ տվեցի Աշոտին,
Տեսա ինձնից խռոված
Թուղթը գցեց նա գետին.
— Չէ՛, չեմ ուզում ես այսպես.
Ո՞ւր է բույնը ծառի տակ...
Նկարեցիր գող աղվես,
Չէ՞ որ կուտի հավ ու սագ...

# ԱՆՀԱՍՑԵ ՆԱՄԱԿԸ

*Ա. ՇԱՀԻՆՅԱՆ*

*Նկ. Ռ. ՍԱՐԳՍՅԱՆԻ*

Վահանիկի մեծ եղբայրը սովորում էր Մոսկվայում, օդաչուական դպրոցում։ Ամեն անգամ, երբ բակի վրայով օդանավ էր թռչում, Վահանիկին թվում էր, թե իր եղբայրն է։ Նա ձեռքերը վեր պարզած կանչում էր.

— Աշո՜տ, Աշո՜տ...

Բայց ոչ ոք չէր լսում նրան։

Մի անգամ մայրիկը Աշոտին նամակ էր գրում. Վահանիկը մոտեցավ նրան։

— Թուղթ տուր, ես էլ եմ ուզում նամակ գրել։

Մայրիկը մի մաքուր թերթիկ տվեց։ Երկար ժամանակ Վահանիկը գլուխը կախ խզբզում էր։ Նրա գրչածայրը անընդհատ ճռճռում էր, քերում սպիտակ թուղթը, իսկ մայրիկն այնպե՜ս սահուն ու լավ էր գրում։

Վահանիկը սկսեց ուշադրությամբ հետևել, թե ինչպես մայրիկը նամակը վերջացնելուց հետո տեղավորեց նախորոք հասցեագրված ծրարի մեջ։ Նրա հայացքն ընկավ սեղանի ծայրին դրված կապտավուն ծրարներին։ Ինչքան էլ շատ են։ Նա գաղտնի վերցրեց մեկն ու երբ մայրիկը գնաց մյուս սենյակը, անաղմուկ բացեց դուռը և դուրս եկավ։

***

Բակում խաղում էին Սուրիկն ու կապուտաչյա Ջինան։ Վահանիկը մոտեցավ նրանց ու ասաց.

— Գնանք, փոստարկղ գցենք։

— Այդ ի՞նչ է,— հետաքրքրվեց Ջինան ընկերոջ ձեռքի ծրարը տեսնելով։

— Նամակ է...

— Իսկ դու կարողանո՞ւմ ես գրել։

— Ըհը՜... — հաստատեց Վահանիկը։

— Գնանք,— ասացին երեխաներն ու բակից դուրս եկան։

Նրանք արագ անցան փողոցը և մյուս մայթով մոտեցան փոստարկղին։ Վահանիկը փորձեց նամակը անցքով ներս գցել, բայց արկղը բավականին բարձր էր։ Նա նույնիսկ ոտքի ծայրերին կանգնեց, բայց էլի ձեռքը չհասավ։

— Տուր ես գցեմ, տե՛ս, ինչքա՜ն մեծ եմ,— պարծեցավ Սուրիկը։

— Երբ դու բարձր տեղ չկանգնես, երբեք



*...Վահանիկը գլուխը կախ խզբզում էր։*

էլ մեծ չես լինի,— ավելացրեց Վահանիկը։

Երեխաները վիճում էին ու հերթով փորձում. բայց նրանցից ոչ մեկին չէր հաջողվում նամակը արկղը գցել։

Այդ միջոցին նրանց մոտեցավ անցորդներից մեկը, որը մինչ այդ կանգնել և ուշադրությամբ հետևում էր երեխաների աղմկոտ վիճաբանությանը։

— Ա՛յ թե մեծ եք հա՜, ձեռքներդ էլ չի հասնում,— կատակեց անցորդը։

— Քեռի՛,— անհամարձակ դիմեց նրան Վահանիկը,— խնդրում եմ այս նամակը փոստարկղը գցեք։

Անցորդը ժպտաց ու վերցրեց նամակը. և այն է՝ ուզում էր արկղը գցել, երբ ինչ-որ բան նկատելով ձեռքը ետ քաշեց։ Ծրարի վրա ոչինչ չկար գրված։

— Առանց հասցեի՞, չէ, բարեկամ, սա փոստարկղից դենը չի գնա, ասաց անցորդը ու նամակը վերադարձրեց։

Երեխաները շփոթված կանգնել ու, հեռացող անծանոթի ասածներից ոչինչ չհասկանալով, մեկը մյուսի երեսին էին նայում։

Այդ պահին նրանց մոտեցավ Վահանիկի մայրիկը և հանդիմանելով տուն տարավ նրանց:



...ոչ մեկին չէր հաջողվում...

Երբ նրանք բակ մտան, մայրիկը բացեց անհասցե ծրարը: Ծալծլված թղթի վրա անհասկանալի խզբզանքներ կային, նա ծիծաղեց ու դարձավ Վահանիկին.

— Այս ի՞նչ է:

— Նամակ... Աշոտին եմ գրել, իսկ այն անծանոթ քեռին ասաց, որ նամակս անհասցե է և դրա համար էլ ոչ մի տեղ չի գնա: Դե՜, ես ինչպես հասցե գրեի:

— Բա դու ասում էիր գիտեմ,— ասաց կապուտաչյա Ջինան:

— Դե՜, ես նամակ գրել գիտեմ,— վիրավորված արդարացավ Վահանիկը, իսկ հասցե... Հասցեն ի՞նչ բան է, մայրի՛կ,— հարցրեց նա:

— Հասցեն այն տեղի անունն է, ուր ուղարկվում է նամակը: Դու դեռ փոքր ես. ա՛յ, երբ դպրոց կգնաս, կսովորես նամակ գրել. իսկ դու չես լսում մայրիկիդ, փողոց ես դուրս գալիս,— հանդիմանեց մայրիկն ու տուն գնաց:

***

Երեխաները խաղում էին բակում: Խաղում էր և փոքրիկ Վահանիկը: Նա երազում էր այն օրը, երբ դպրոց կգնա և կսովորի իսկական հասցեով նամակ գրել, իսկ փոստարկղն էլ այն ժամանակ այնքան բարձր չի լինի նրա համար:

## ՔԵՌՈՒ ՊԵՍ

*ՍԻԼՎԱ ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ*

Իմ կապիտան քեռու պես
Ատրճանակ ունեմ ես:
Ե՛վ փող ունի, և՛ փական,
Կարծես լինի իսկական:

Հենց որ սեղմում եմ մատով,
«Բո՜ւմ» — պայթում է որոտով.
Ու փախչում են սրտաճաք
Գայլ ու գազան, մայր ու ձագ:

Չվախենա՛ս, ա՛յ տատի.
Թե որ «Կարմիր գլխարկի»
Գայլը հանկարծ գա մեր տուն՝
Կկրակեմ ես իսկույն...

# ԱՇԽԱՏԱՆՔԻ ՀԵՐՈՍԸ

Մ. ԼԵԲԱՆԻՁԵ

Նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ

Անցյալ տարի, օգոստոսին մայրիկը մեզ ասաց.

— Շուտով դասերը կսկսվեն. մոտենում է Թբիլիսի վերադառնալու ժամանակը. եկեք գնանք գյուղ՝ տատիկին այցելության։

Մայրիկը մեզ արթնացրեց լուսաբացին։ Մի փոքր տեղ գնացինք անվլա։ Գյուղից դուրս կանգ առանք հանգստանալու։ Սառնորակ ջրով լվացվեցինք թե չէ, ուտել ուզեցինք. նախաճաշեցինք և շարունակեցինք ճանապարհը։

Վերջապես սարի գագաթից երևաց տատիկենց գյուղը։ Մենք կարող էինք ավելի շուտ հասնել այնտեղ, բայց հապաղեցինք. դիտում էինք արևածագը, իսկ հին բերդի ավերակների մոտ մայրիկը մեզ պատմեց թյուրքական զորքերի պարտության մասին։ Մեկ էլ հանկարծ եղանակը փոխվեց։ Ամպերը կախվեցին ու տատիկենց գյուղին չհասած, եգիպտացորենի դաշտով անցնելու ժամանակ, այնպիսի մի տեղատարափ անձրև վրա տվեց, որ քիչ էր մընում մեզ քշեր։ Ճանապարհով, գետի պես շառաչելով, հոսում էր պղտոր անձրևաջուրը։

— Վազենք,— ասաց Դաթունան։

Բայց մենք բաց դաշտում էինք ու տեղ չկար, որ անձրևից պաշտպանվեինք։ Մայրիկը բռնեց մեր ձեռքերից և մեզ վազելով տարավ ծլեփից սարքած մի ծածկի տակ։ Նայեցինք մեր շուրջը և համոզվեցինք, որ դա հրաշալի մի ծածկույթ էր, գրեթե խրճիթ։ Դրսում անձրևը ձաղկում է եգիպտացորենի կանաչ ժապավենների նման տերևները, իսկ ներսում չոր է։ Ահա անձրևաջուրը ծորում է ծլեփի արանքներից և կաթելով կիսավառ ածուխների վրա, թշշում է։

— Հո՛վս, ի՞նչ եգիպտացորեն է,— ասաց Դաթունան, երբ մենք շունչ առանք։

— Ճիշտ որ, հիանալի եգիպտացորեն է,— հաստատեց մայրիկը։

Ես նայեցի ձախ կողմի ցանքին. ես փոքր եմ, բայց էլի իմ գոտկատեղին չէր հասնում. իսկ այս եգիպտացորենն ուղղակի ցույց տալու բան է. թաթերիս վրա էլ որ բարձրանամ, կողրերին չեմ հասնի։

Ծածկի տակից մենք նայում էինք եգիպտացորենին ու կրակի մոտ չորացնում մեր շորերը։



... մեր առաջ կանգնեց մի տղամարդ...

Դաթունան կրակի վրա չախ ավելացրեց ու խարույկը բորբոքեց։

— Երևի պահակն է մոռացել հանգցնել կրակը,— ասաց մայրիկը։

Ուրեմն՝ պահակները գիշերները հսկում են

դաշտերն ու կրակ են վառում, որ արջերը ցանքը չտրորեն։

Անձրևը չէր դադարում։ Մայրիկը կանգնել էր ծածկի սյան մոտ և նայում էր դաշտին։ Մոտ կանչելով ինձ, նա ցույց տվեց բարձր եգիպտացորենը. հինգ երկար կողր կախված էին գլխիվայր։

— Զարմանալի է,— ասաց նա.— մի հող է, բոլոր դաշտերն էլ տատիկենց գյուղինն են. բայց այսքան լավ եգիպտացորեն ճանապարհին ոչ մի տեղ չկար։

Մեկ էլ ինչ-որ մեկը ջրիկ ցեխը չփչփացնելով, մտավ ծածկի տակ։ Ետ նայեցինք, որ մեր Դաթունան է։ Պատիճներից մաքրած ոսկեգույն կողրերը նա կանոնավոր դարսել էր իրար վրա և խտիտն առած բերեց մեզ։

Մայրիկը բարկացավ.

— Այդ ի՞նչ արեցիր, բիճո՛*)։

— Ոչի՞նչ... ի՞նչ է որ...

— Ինչպե՞ս թե ոչի՞նչ... դո՞ւ ես ցանել, դո՞ւ ես բուկը տվել. այդ եգիպտացորենի տերը գյուղն է։

Դաթունան գլուխը կախեց. ափսոսում էր դեն գցել եգիպտացորենը... և ինչպե՞ս դեն գցեր։ Եգիպտացորենի կողրերը նա խնամքով դրեց ջախի վրա ու գնաց կանգնեց հեռու։

Մայրիկը նեղացել էր, շատ էր նեղացել։ Իսկ անձրևը թափվում էր, հա թափվում։

Մի փոքր հանգստանալուց հետո, մայրիկը Դաթունային ասաց.

— Երանի թե հենց հիմա պահակը գար ու քեզ ձերբակալեր։

Նա խոսքը դեռ չէր վերջացրել, երբ ծածկի մոտի եգիպտացորենը խշխշաց և, ասես գետնի տակից, մեր առաջ կանգնեց բեղավոր մի տղամարդ, մինչև ծնկները քշտած շալվարը հագին, և բարևեց մեզ։

Երկփողանի հրացանը նա դրեց մի անկյուն, գոտուն շարած հինգ-վեց լորը կախեց մեխից և սկսեց ներողություն խնդրել, որ աթոռ չկա և մենք պետք է քարերի վրա նստենք։ Այդ մարդը դաշտի պահակն էր։ Դաթունան գունատվեց։

— Որտեղի՞ց եք գալիս, ո՞ւր եք գնում,— սկսեց հարցուփորձ անել պահակը։ Հետո կրակի վրա ուզեց ջախ ավելացնել, բայց դարսած կողրերը տեսնելով, հոնքերը կիտեց։

— Ա՛յ, դա արդեն լավ չէ՛։ Կա-չկա քո արածն է,— ասաց նա Դաթունային։— Ախր սա կոմերիտական բրիգադի հողամասն է. չե՞ս տեսնում, որ այստեղ ռեկորդային բերք է աճել...

Ոչ միայն առաջին դասարանցի Դաթունան, այլև ես չգիտեի, թե ինչ բան է ռեկորդային բերքը. իսկ Դաթունան երկու տարով ինձանից փոքր է։

Դաշտի պահակը նեղացել էր մեզ վրա, բայց նրա բարկությունը շուտով անցավ։

Խարույկի շուրջը շարված քարերին նստած, անձրևի աղմուկի և խորովվող եգիպտացորենի ճարճատյունի ներքո, մենք լսում էինք դաշտի պահակի զրույցը։

— Երբ մի հեկտար հողից յոթանասուն ցենտներ եգիպտացորեն են ստանում՝ ռեկորդային բերք է։ Իսկ դուք գիտե՞ք, թե ինչքան է յոթանասուն ցենտները։ Այդպիսի բերք ստանալը հեշտ գործ չէ։ Յոթանասուն ցենտները մեզ՝ այս չորսիս հինգ տարի կըկերակրի... Բա կարելի՞ է ռեկորդային բերքի հողամասից եգիպտացորեն պոկել։ Ախր, որ մի հատիկ էլ պակաս լինի, Սիլովան Դավիթայան աշխատանքի հերոսի կոչում չի ստանա։

— Իսկ ո՞վ է Սիլովան Դավիթայան,— հարցրեց Դաթունան։

— Կոմերիտական օղակի ղեկավարն է։ Գիտե՞ս ինչ տղա է, թե չէ։ Իսկական կոմերիտական. աշխատասեր, քաղաքավարի։ Հողամասից ոչ մի ժամ չի բացակայում։ Նրա օղակում բոլորը կոմերիտականներ են։

Հանկարծ պահակը վեր կացավ տեղից ու ձեռքը դեպի ճանապարհը մեկնելով, բացագանչեց.

— Ահա և ինքը...

Ճանապարհով, ջուրը չփչփացնելով, վազում էին յոթ թե ութ երիտասարդ։ Նրանց ուսերին բրիչներ կային, իսկ շալվարները քշտած էին մինչև ծնկները։ Հենց վազելիս ողջունելով մեզ, նրանք կորան եգիպտացորենի սաղարթի մեջ և սկսեցին բրիչներով աշխատել։ Իսկ ծեր պահակը բեղերը շոյեց և հպարտությամբ ասաց.

---

*) Բիճո—տղա։

— Այս ամիս անձրև շատ եկավ. իսկ եգիպտացորենը շատ ջուր չի սիրում, տոթին էլ չի դիմանում։ Դրա համար էլ տղերքը առուներ են փորում, որ ավելորդ ջուրը հոսի գնա։ Տեսեք, թե ջուրը ո՞նց է կարկաչելով վազում ցած... Եթե ջուրը թողնեն դաշտում, բերքը կփչացնի, եգիպտացորենը կփտի։

Կես ժամ հետո անձրևն սկսեց դադարել։ Ճանապարհի վրա երևաց կոլտնտեսության մեծ ավտոմեքենան։ Կոմերիտական բրիգադի տղերքին տեսնելով, շոֆերը կանգնեցրեց մեքենան։ Տղաները գործը վերջացրին ու մենք էլ նրանց հետ մեքենա նստեցինք։

Անձրևը դադարեց։ Նորից փայլեց արևը։ Լավն էին կոմերիտականները։ Ոտից-գլուխ թրջվել էին, բայց էլի երգում էին։ Երբ մեքենան թեքվում էր, նրանք սահում էին թափքի թաց հատակի վրայով, ընկնում էին, ծիծաղում, վեր կենում ու շարունակում էին երգել։

Տատիկի տան դարբասի մոտ մեքենան կանգնեց։ Կոմերիտականներից մեկը, այն, որ ամենից թուխն էր, մեզ օգնեց մեքենայից իջնելիս, շոյեց Դաթունայի ու մի հասած տանձ տվեց նրան։ Դաթունան չկարողացավ նույնիսկ շնորհակալություն հայտնել ու ամոթխած նայում էր նրան։

Այդ օրվանից անցել էր մի քանի ամիս։ Մենք արդեն Թբիլիսիում էինք ու դպրոց էինք գնում։

Մի օր էլ հայրիկը բացեց թերթը և մոտ կանչելով մեզ, սկսեց նորություններ պատմել։ Հետո ցույց տվեց աշխատանքի հերոսների նկարները, որոնք տեղավորված էին մի շարքում։ Մի նկարի տակ գրված էր՝ «Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Սիլովան Դավիթայա»։

— Սա այն քեռին է, որ մեզ օգնեց ավտոյից իջնելիս ու ինձ տանձ տվեց,— բացականչեց Դաթունան։

Մենք կանչեցինք մայրիկին, և հայրիկին պատմեցինք այն բոլորը, ինչ որ տեսել էինք այն անձրևոտ օրը տատիկենց գյուղ գնալիս։

Այդ երեկո Դաթունան շատ երկար գրեց, ուշ քնեց և սեղանին թողեց ծրարված, բայց առանց հասցեի մի նամակ։ Նամակում գրված էր.

«Սիլովան քեռի. ամեն օր ես թերթերում փնտրում էի ձեր նկարը և շատ էի տխրում, որ մինչև հիմա չեմ գտել։ Միշտ մտածում էի. չլինի՞, թե այն եգիպտացորենը, որ ես կերա, բերքը պակասեցրել է։ Դաշտի պահակն ասաց, որ եթե յոթանասուն ցենտներից նույնիսկ մի հատիկ պակաս լինի, դուք աշխատանքի հերոս չեք դառնա...



...շոյեց Դաթունային ու մի հասած տանձ տվեց նրան:

Շնորհավորում եմ ձեր հաղթանակը։

Ներեցեք, քեռի Սիլովան, որ ես եգիպտացորեն պոկեցի ձեր դաշտում։

Գրեց Դաթունան»։

Նամակն ուղարկեցինք։ Մի քանի օր հետո արդեն կարդում էինք պատասխանը։

«Իմ Դաթունի. չնայած որ դու կոմերիտական օղակի դաշտում եգիպտացորեն ես պոկել, մենք համենայն դեպս հաղթեցինք ու յոթանասուն ցենտների փոխարեն մի հեկտարից ութսուն ցենտներ եգիպտացորեն հավաքեցինք։ Իսկ դու, երևում է, որ լավ տղա ես, որովհետև մտածել ես մեր դաշտի մասին և ուրախ ես մեր հաղթանակի համար։

Լավ սովորիր, աշխատասեր եղիր։ Քեզ բարևներ են ուղարկում երիտասարդական օղակի կոմերիտականները։

Քո Սիլովան»։

Երեխաները մեր երկրում շրջապատված են սիրով ու հոգատարությամբ. Նրանց պայծառ ապագայի մասին մտածում են Կոմունիստական մեծ պարտիան և Սովետական կառավարությունը:

Մանուկների վառ ցանկությունները բավարարելու և նրանց ձգտումներին ուղղություն տալու նպատակով բացված են շատ հիմնարկներ՝ պատանի տեխնիկների, բնասերների կայաններ, պիոներների պալատներ: Այդպիսի հիմնարկներից է նաև Երևանի Պիոներների պալատը:

Պալատի 166 ինքնագործ խմբակներում ընդգրկված բազմաթիվ երեխաներ սովորում են և զարգացնում իրենց ընդունակությունները:

Ահա պալատի նկարչական խմբակը:

Այս խմբակում սովորած երեխաներից քառասունհինգը ընդունվել են գեղարվեստական ուսումնարանը, իսկ չորս հոգի այժմ Գեղարվեստական ինստիտուտի ուսանող են:

Ամեն տարի մեր Հայրենիքի մայրաքաղաք Մոսկվայում տեղի է ունենում պատանի նկարիչների համամիութենական ցուցահանդես: Մեր ռեսպուբլիկայի պատանի նկարիչները միշտ էլ իրենց աշխատանքներով մասնակցել են այդ ցուցահանդեսին և արժանի տեղ գրավել:

1953 թվականի համամիութենական ցուցահանդեսին մասնակցեցին տասնչորս պատանի նկարիչ: Նրանցից ամենափոքրը յոթ տարեկան Կարեն Փափազյանն էր:

Պատանի նկարիչներ՝ Լենմիր Բաղդասարյանի, Ռոմիկ Զուլճակյանի, Լաուրա Պողոսյանի և Ալիկ Ալոյանի աշխատանքները մեծ ուշադրության արժանացան և ուղարկված են Հնդկաստան՝ պատանի նկարիչների համաշխարհային ցուցահանդես:

Այս տարի պալատի նկարչական վեց խմբակում ընդունվել են ութսուն պիոներ: Շատ լավ են նկարում Անատոլի Պապանյանը, Լիպարիտ Եղիազարյանը, Գյուլնդուզ Կալենդարլին և ուրիշներ: Խմբակի ղեկավար ընկեր Գագիկ Ղազարյանի ղեկավարությամբ պատանի նկարիչները ավելի են կատարելագործվում:

Տպագրում ենք պատանի ստեղծագործողների նկարներից մի քանիսի ռեպրոդուկցիաները:



*«ՊԻՈՆԵՐՆԵՐԸ ՇԵՆ ԳՅՈՒՂՈՒՄ»:*

*Նկ. Լենմիր Բաղդասարյանի*

ՊԱՏԱՆԻ
ՍՏԵՂԾ





*«ԳՅՈՒՂԱՍ*

## ՆԿԱՐԻՉՆԵՐՆ
## ԳՈՐԾՈՒՄ ԵՆ



ՌԱՏ ՀԱՅ ՀԱՅՐԵՆԻՔԻՆ»։

Նկ. Գյունդուզ Կալենդարլիի։



ԵՍԱԿԱՆ ՑՈՒՑԱՀԱՆԴԵՍԻ ՀԱՄԱՐ»։

Նկ. Ռոմիկ Ջուլհակյանի



«ԽԱՂՈՂԱՀԱՎԱՔ»։ Նկ. Ժորա Գյուլխասյանի



«ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅՈՒՆ»։ Նկ. Անատոլի Պապանյանի



«ԳՈՐԾԱՐԱՆԻ ԿԱՌՈՒՑՈՒՄԸ»։ Նկ. Ալիկ Ալոյանի

## ՄՈՐ ԽՐԱՏԸ

ՀԵՆՐԻԿ ՍԵՎԱՆ

Մուկ էր բռնում կատվի ձագը,
Պոչը բողեց դռան տակը,
Ամբողջ գիշեր մնաց անքուն,
Լաց էր լինում ցավից՝ բաժնուն:
Երբ մայր կատուն տեսավ ձագին,
Շոյեց փոքրիկ իր բալիկին.
— Մի՛ վշտանա,— ասաց,— բալա՛,
Ով որ խաղա, նա կկաղա:

## ԿԱՑԻՆԸ

Ձախին անցել էր. գիժ կացինը
Չէր հարգնում ծառն ու ծիլը.
— Ջարդեց, ախպե՛ր սա մեր ցեղը,
Պետք է պատժել տեղն ու տեղը,—
Գանգատվեցին ծառն ու ծիլը,
Մեջտեղ բերին գիժ կացինը:
— Մի՛ գանգատվեք,— ծաղրեց գործը,—
Ձեզանից է կացնի կոթը:




ԱՐ. ՕՀԱՆՅԱՆ

Նկ. Կ. ԱՆՏՈՆՅԱՆԻ

*Հնչեց վերջին զանգը: Պիոներները հանձնում են վերջին քննությունը: Եվ արդեն ամեն մի պիոներական ջոկատ մտածում է, ամառը հետաքրքիր և ուրախ անցկացնելու, ճանապարհորդելու և հանգստանալու մասին:*

*Հայաստանի տեսարժան վայրերին ծանոթանալու համար հայրենի երկիրն ուսումնասիրող պիոներները, ավագ ջոկատավարի օգնությամբ, կարող են քարտեզի վրա ընտրել իրենց ցանկացած մարշրուտը. ասենք՝ Երևան—Սպիտակ—Սևան—Երևան մարշրուտը...*

*Երևանից ուղևորվում եք դեպի Աշտարակ: Ճանապարհն անցնում է այգեստանների և կոլտնտեսային դաշտերի միջով: Շարունակ ձեր աչքերի առաջ է վերասլաց, ձյունափառ Արարատը: Անցնում եք Քասախի վրա դեռևս 13-րդ դարում կառուցված կամուրջը: Ահա և Աշտարակը, Քասախ գետի աջ ափին, փարթամ այգիների մեջ: Այստեղ դիտում եք ձորը, խաղողի այգիները, նշանավոր գրող Պերճ Պռոշյանի տուն-թանգարանը, աղբյուր-հուշարձանը և հինգերորդ դարից մինչև 13-րդ դարը կառուցված պատմական հուշարձանները՝ Ծիրանավորը, Կարմրավորն ու Սպիտակավորը: Աշտարակից ոչ հեռու Օշական գյուղում այցելում եք հայ գրերը ստեղծող Մեսրոպ Մաշտոցի գերեզմանը:*

*Աշտարակում գիշերելուց հետո գեղատեսիլ լեռնային խճուղով գնում եք Ապարան: Այստեղ ծանոթանում եք նորակառույցներին, պատմական հուշարձաններին: Գիշերում եք Ապարանում: Ապարանից դուրս գալով՝ խճուղիով ուղևորվում եք դեպի Սպիտակի լեռնանցքը, որ գտնվում է Փամբակի լեռնաշղթայի վրա: Շուտով հասնում եք լեռնանցքի ամենաբարձր կետին, որը 2373 մետր բարձրություն ունի: Այնտեղից ձեր աչքերի առաջ հանկարծ բացվում է մի աննման տեսարան: Հեռու, ներքևում երևում են՝ Փամբակ գետի հովիտը, Սպիտակ ավանը և բազմաթիվ գյուղեր: Լեռան զառիթափ լանջով օձապտույտ իջնում է դեպի Սպիտակ տանող խճուղին: Լեռնանցքի կատարից նա-*

յում ենք եւ Ապարանի կողմը։ Երևում է Արագածը, նրա զմրուխտե փեշերը, ծաղկաշատ դաշտերը։

Լեռնանցքից իջնում ենք դեպի Սպիտակ ավանը։ Այդտեղ դիտում ենք շաքարի գործարանը, ծանոթանում ավանի մարդկանց հետ։ Գիշերում ենք Սպիտակում և ապա շարունակում ենք ճանապարհը դեպի Լոռի։

Վերջապես հասնում ենք Պուշկինի լեռնանցքին՝ 2038 մետր բարձրության վրա։ Ներքևում տարածվում է Լոռու կանաչազարդ դաշտը։ Նրա վրա երևում են տասնյակ կոլտնտեսային գյուղեր՝ կարմիր կղմինդրածածկ տներով։ Երևում են՝ Ստեփանավանը, Լեջանը, Ագարակը։ Նախիրներն այստեղ ու այնտեղ խաղաղ արածում են թավիշ արոտներում։ Հազիվ նշմարվում է ծխնելույզներից բարձրացող ծուխը։ Նոսր անտառը, որով պատած են Բազումի լեռների հյուսիսային լանջերը, ավելի հրապուրիչ է դարձնում սքանչելի բնապատկերը։

125 տարի առաջ Էրզրում գնալիս, այս լեռնանցքի վրա Պուշկինը հանդիպեց ռուս մեծ գրող Գրիբոյեդովի դիակը Թեհրանից Թբիլիսի փոխադրող սայլին։ Լեռնանցքի վրա, որպես հիշատակ այդ հանդիպման, կառուցվել է հուշարձան և լեռնանցքը կոչվել է Պուշկինի անունով։

Հասնում ենք Ստեփանավան, դիտում ենք պանրագործարանները, տրիկոտաժի ֆաբրիկան, ձուլայի գործարանը, Ստ. Շահումյանի տուն-թանգարանը, ծանոթանում պատմական հուշարձանների հետ, դիտում Լոռու բերդը։

Այնուհետև ուղևորվում ենք դեպի Թումանյան երկաթուղային կայարանը։ Ճանապարհն անցնում է Լոռու կանաչազարդ լեռնադաշտով և անտառի մեջ զիգզագող խճուղիով իջնում դեպի Թումանյան կայարանը։ Այստեղ դիտում ենք Ձորագէսի ամբարտակը և էլեկտրակայանը, ապա ռաուիթափ սարալանջով բարձրանում ենք Թումանյան գյուղը, այնտեղ դիտում հայ մեծ բանաստեղծ Հովհաննես Թումանյանի տուն-թանգարանը։ Մյուս օրը ուղևորվում ենք

դեպի Թումանյանի հրակայուն աղյուսի գործարանը, ծանոթանում արտադրությանը, լըսում բանվորների և ինժեներների զրույցները գործարանի մասին։ Ապա գնացքով սլանում ենք Փամբակի նեղ կիրճով, Փամբակ գետի անտառապատ ափերով։ Անցնում ենք Շահալիի հոչակավոր երկաթուղային կամուրջը և շուտով հասնում ենք Կիրովական։

Քաղաքը փռված է Բազումի և Փամբակի լեռնաշղթաների միջև ընկած լայնատարած հովտում։ Այստեղ Փամբակ գետի մեջ են թափվում Վանաձոր ու Տանձուտ գետերը։ Զբոսնում ենք մոտակա անտառներում, դիտում մերձքաղաքային սովխոզները, սանատորիան։ Քաղաքում այցելում ենք Պիոներների տունը, դիտում Ալ. Մյասնիկյանի անվան գործարանը, կոշիկի, տրիկոտաժի ու մուշտակեղենի ֆաբրիկաները, մեքենաշինական գործարանը, նորակառույց շենքերը։

Երկու-երեք օր Կիրովականում մնալուց հետո, խճուղիով ճանապարհվում ենք դեպի Դիլիջան։ Անցնում ենք ճանապարհի վրա




գտնվող Համզաչիման, ապա Ցիոլետովո գյուղերի միջով։ Ճանապարհը մտնում է մի նեղ, անտառապատ, հեքիաթային գեղեցկություն ունեցող ձորի մեջ։ Աջ կողմից ձեզ ուղեկցում են Փամբակի բարձրաբերձ լեռների ծառազարդ լանջերը և Աղստեֆ գետն իր

խուլ վշշոցով, ձախ կողմից՝ Բազումի լեռների անտառոտ բազուկները։

Հանկարծ, անսպասելիորեն ձեր առաջ բացվում է Դիլիջանը, իր գեղեցիկ դարավանդներով, փշատերև ու սաղարթավոր անտառներով, կարմրակտուր տներով ու հոյաշեն սանատորիաներով։ Դիլիջանում գիշերում եք և մյուս օրը դիտում քաղաքը, կահույքի ֆաբրիկան, «Դիլիջան» հանքային ջրի գործարանը։ Գնում եք տեսնելու վեց կիլոմետր հեռավորության վրա գտնվող հանքային ջրի աղբյուրը՝ Բլդան չայը, զբոսանք եք կատարում անտառում, լողանում Աղստեֆ գետում։

Երրորդ օրը ուղևորվում եք դեպի բարձրանիստ Սևանա լճի ափերը։ Դիլիջան—Սևան խճուղու անթիվ կեռմաններով բարձրանում եք Սևանա լիճը հյուսիսից շրջափակող Արեգունի լեռնաշղթայի զմրուխտե լանջերը։ Ձեզ ուղեկցում են սոճիների անտառները, ծաղկազարդ մարգագետինները, ժայռերից գահավիժող փրփրալի ջրվեժները։

Երբ անցնում եք Սևանի լեռնանցքը (2122 մետր), բնապատկերը միանգամից փոխվում է։ Դիլիջանի ձորի մեղմ ու նուրբ պեյզաժին փոխարինում է Սևանի ավազանի խիստ, վեհաշուք գեղեցկությունը, Վարդենիսի ու Գեղամա լեռների սեգ գագաթները։ Ճանապարհն անցնում է Սևանի լճի զառիթափ ափով։

Սևան ավանում հանգստանում եք, լողանում լճի վճիտ ջրերում, լճի վրա զբոսանք կատարում «Միկոյան» նավով, դիտում ձկնորսարանները ու ձկան գործարանները։ Դիտում եք նաև Սևանի ստորերկրյա հիդրոէլեկտրակայանը և կղզին։

Սևանից Ն. Ախտայի վրայով վերադառնում եք Երևան։

Պիոներները քարտեզի վրա կարող են ընտրել խճուղիներով անցնող մի շարք այլ մարշրուտներ՝ Շիրակում, Լոռում, Սևանի ավազանում, Շամշադինում ու Զանգեզուրում, ինչպես նաև Երևանում ճանապարհորդելու համար։

# ԽԱՎԱՐԱՍԵՐ ՀՍԿԱՆ

Կ. ՉՈՒԿՈՎՍԿԻ

Նկ. ԱՆ. ԳԱՍՊԱՐՅԱՆԻ

## ԱՌԱՋԻՆ ՄԱՍ

Հեծանիվի վրա նստած,
Սլանում են արջերն առաջ,
Արջի հետևից զգույշ, արքուն,
Սլանում է ուստա կատուն:
Նստած սիրուն օդապարիկ,
Մոծակներն են թռել երկինք:
Խեցգետինն է նստել անձա,
Առոֆ-փառոֆ, կաղ շան վրա.
Իսկ գայլերը ձի են նստել,
Առյուծները ավտո բազմել,
Ճղիկները տրամվայով,
Մեծ դողոշը ցախավելով,
Ծիծաղում են ու սլանում,
Յուղոտ բլիթ անուշ անում:
Դարբասի մոտ, մեկ էլ հանկարծ,
Գազանները իրենց առաջ,
Իրենց առաջ տեսան կանգնած,
Մի ահավոր,
Մի բեղավոր,

Մի չիկահեր խա-վա-րա-սեր.
Խավարասեր, խավարասեր,
Մի ահռելի խավարասեր:
Նա ճչում է ու գոչում,
Երկար բեղերն է ճոճում.



«Էհե՜յ, ո՞ւր էք շտապում:
Ոչ մեկից էլ չեմ ների, չե՛մ ների,
Հուփ կտամ. կուլ կտամ,
Ձեզ բոլորիդ կո՛ւլ կտամ»:
Գազանները դողացին,
Քրտինքի մեջ լողացին.
Իսկ գայլերը սարսափահար,
Սկսեցին չափել իրար.
Կոկորդիլոսն, ահը սրտին,
Կերավ իր մոտ կանգնած գորտին.
Սարսափահար փիղը հսկա,
Նստեց փշոտ ոզնու վրա:
Խեցգետինները միայն կռվարար,
Շարքի կանգնեցին պայքարի համար:
Ճիշտ է, ետ են քաշվում դանդաղ,
Բայց բեղերն են ճոճում անվախ,
Եվ դիմում են այդ բեղավոր հրեշին.
«Ի՞նչ ես ճչում ահավոր,
Ա՛յ, մենք էլ ենք բեղավոր,
Մեր բեղերն էլ մենք նույնպես
Տե՛ս, շարժում ենք, ճիշտ քեզ պես»:
Բայց նրանք էլ չդիմացան, ծլկեցին:
Իսկ գետաձի մի ծերուկ,
Այստեղ հանեց մեծ աղմուկ.
«Կոկորդիլոսնե՛ր, կետե՛ր ցեղակից,
Ով վրեժ լուծի այդ չար հրեշից,
Ով այս պայքարում բարձրացնի դրոշ,
Կտամ այդ քաջին երկու չաղ դոդոշ»:
«Մենք չենք վախում նրանից,
Այդ քո վախկոտ հսկայից,
Ատամներով,
Ժանիքներով,
Սմբակներով,
Նրան մենք
Կնխլտենք, կնզմենք»
Եվ կատաղած, խառնացրիվ,
Գազանները մտան կռիվ:
Բայց տեսնելով հսկային
Վա՜յ-վա՜յ-վա՜յ,
Գազանները ծլկեցին,
Վա՜յ-վա՜յ-վա՜յ:
Բեղավորից նրանք այնպե՜ս վախեցան,
Անտառով մեկ փախուստ տվին, հեռացան:
Բայց գետաձին մեր սրտոտ,
Գոչեց՝ «Ամո՛թ, ձեզ ամո՜թ.
Քաջ եղբայրնե՛ր ցեղակից,
Դուրս ելեք ձեր որջերից:
Այդ բեղավոր հրեշին
Հանեք ձեր սուր կոտոշին»:
Բայց քաջերը ցեղակից՝
Կմկմում են որջերից՝
«Մենք հրեշի՞ն,
Մեր կոտոշի՞ն,
Ա՜խ, ոչ, թանկ է մեր կաշին,
Եվ մեր պոզերն էլ նույնպես,
Այնքան էժան չեն, գիտես»:
Ճահիճներում գազանները



Պահ մտած,
Օրորում են ականջները
Սարսափած:
Զխչխկացնում ատամները
Խիստ վախից,
Հսկա փիղն էլ
Առուն մտավ սարսափից:
Միայն խիզախ կապիկները
Մտան իրենց ճամպրուկները,
Եվ սրընթաց ու ճապուկ,
Հազիվ փախան՝ պուկ-պուկ-պուկ:
Շնաձուկն էլ պոչը շարժեց,
Ծլկեց ահից:
Գայլաձուկն էլ մի կերպ փախավ,
Նրա հետքից:

## ԵՐԿՐՈՐԴ ՄԱՍ

Եվ ահա ահեղ խավարասերը հաղթանակ տարավ,
Անծայր դաշտերի, մեծ անտառների տիրակալ դարավ:
Խոնարհվեցին գազանները նրան մեկ-մեկ.
(Տիրակալին, չար հրեշին, հազար անեծք):

Իսկ նա շրջում է, բեղերը ճոճում,
Ոսկեգույն փորը շոյում ու ճչում.
«Ձեր ձագերին բերեք ինձ մոտ հոտոտեմ,
Այս իրիկուն նրանց պիտի ես ուտեմ»:
Գազաններն են հառաչում,
Ոռնում, լալիս ու ճչում:
Ամեն որջում ու խցում
Չար բկլիկին անիծում:
Ո՞ր մայրիկն իր բալիկին,
Փղիկին կամ գայլուկին,
Բրդոտ, քոթոթ արջուկին,
Ո՞ր մայրիկն իր նազանին
Կտա այդ չար գազանին,
Որ մի անկուշտ խրտվիլակ
Տանջի նրանց շարունակ:
Ճար չկա՛—ճար չկա՛.
Մայրիկներն են հեկեկում, արտասվում:
Ձագուկներից ընդմիշտ-ընդմիշտ
բաժանվում:

Առավոտ էր, վառ գարուն,
Հեռվից եկավ կենգուրուն.
Բեղավորին որ տեսավ,
Սաստիկ-սաստիկ բարկացավ.
«Գազաննե՛ր, մի՞թե սա է ձեր հսկան.
Հա՛-հա՛-հա՛-հա՛-հա՛.
Խավարասեր է սա սովորական,
Հա՛-հա՛-հա՛-հա՛-հա՛.
Խավարասեր, խավարասեր մի փոքրիկ,
Բզեզի պես մանրատոտ,
Դրանի՞ց եք վախում այդպես...
Ամոթ է ձեզ, ամոթ է ձեզ:
Դուք, որ ունեք սուր-սուր ճանկեր,
Դուք, որ ունեք կեռ ժանիքներ,
Դուք ծառա՞ եք այդ պստիկին,
Մանրատոտիկ այդ բկլիկին»:
Բեգեմոտները սարսափած նրան ասին.
«Գժվել ես դու, ի՞նչ ես խոսում նրա մասին:
Գնա, հիմա՛ր, իսկույն չքվիր դու այստեղից,
Գնա՛, թե չէ, փորձանք կգա քո խոսքերից»:
Այդ միջոցին թփից մոտիկ,
Վառ դաշտերից ծաղկախոտիկ,
Ծիտիկն ահա թռավ փոքրիկ,
Թռիկ-թռիկ, թռավ մոտիկ,
Ծիվ-ծիվ, ճիկ-ճիկ,
Ճիկ-հա-չիրիկ:



Մեր ծիտիկը բեղավորին կտուցն առավ
Եվ չար հսկան նրա փորին բաժին դառավ:
Հրեշն այսպես կորավ գնաց,
Նույնիսկ բեղերն էլ չմնաց:
Գազաններն են նորից հրճվում,
Փարվում, գրկում մեկը մեկին,
Ողջունում են, փառաբանում,
Ազատարար քաջ ծիտիկին.
Էշերը լուրջ, երգ են երգում նոտաներով,
Ժիր այծերն են մաքրում ճամփան
միրուքներով,
Մեծ խոյերն են թմբկահարում,
Ծեր բվերն են փողահարում,
Աշտարակից ագռավներն են
Կանչում, ճչում,
Ձղջիկներն են թաշկինակներն
Ուրախ ճոճում,
Երգում, պարում,
Քաջ ծիտիկին փառաբանում,
Իսկ փղուհին՝ պճնուհին,
Այնքան պարեց օրորվեց,
Որ լուսինը երկնքից
Խեղճի գլխին գլորվեց:
Ու ճահիճի խորքն անցավ
Ա՛յ քեզ նոր հոգս, ա՛յ քեզ ցավ:
Պետք է սուզվել ճահիճը,
Հանել լուսինը կրկին,
Մեխել կապույտ երկնքին:

*Թարգմ. Վ. ՀՈՎԱԿԻՄՅԱՆ*

# ՖԵՐՄԱՅՈՒՄ

Խ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

Նկ. Ս. ՍԱՖԱՐՅԱՆԻ

Կիրակի էր։ Առաջին դասարանցի Սալվիկն ու Ռուբիկը իրենց տների առջևի փոքրիկ հրապարակում գնդակ էին խաղում։

Հանկարծ Սալվիկն ասաց.

— Կոլտնտեսությունը մեզ մի սիրունիկ հորթ է նվիրել։

Ռուբիկը դադարեցրեց խաղը և թերահավատ հարցրեց.

— Ի՞նչ հորթ։

— Իսկական կովի հորթ...

Այդ ժամանակ նրանց մոտեցավ Պերճիկը։

— Պա՛հ, մենք էլ հորթ ունենք էլի՜,— ծոր տվեց նա։

— Իսկ մերը՝ երկուսն եղավ, մեր Շեկանի հորթը և մեկ էլ կոլտնտեսության նվիրածը։

Տիրեց լռություն։ Մեկ էլ Սալվիկն ասաց.

— Ուզո՞ւմ եք, գնանք հորթը բերենք։ Պարանով կկապենք ու կբերենք։

... Հինգ րոպե անց, առաջինը փողոց դուրս թռավ Պերճիկը. ապա եկավ Ռուբիկը՝ ձեռքին մի երկար ուռենու ճիպոտ։ Հետո եկավ Սալվիկը։

Երեխաները մինչև դպրոց գնացին վազելով։ Հետո թեքվեցին դեպի ֆերմա տանող ճանապարհը, վազելով անցան կամուրջը և մի քիչ հետո տեղ հասան։

Նրանք դեռ նոր էին մտել ֆերմայի բակը, երբ նրանց առջև դուրս եկավ Սալվիկի մայրիկը՝ սպիտակ խալաթը հագին, սպիտակ գլխաշորով։ Մայրիկը բռնեց Պերճիկի և Սալվիկի ձեռքերից ու նրանք գնացին կաթի մշակման սենյակը։ Ռուբիկը քայլեց նրանց հետևից։

— Այդ ինչպե՞ս եք եկել, հը՞...

Երեխաները պատասխանեցին ու հափշտակությամբ սկսեցին նայել սերզատ մեքենային։ Սպիտակ շորեր հագած երկու մորաքույր դույլերով կաթը լցնում էին մեքենայի վերևում դրված կաթսայի մեջ։

Հետո երեխաները մայրիկի հետ մտան գոմը։ Նրանց կոշիկները կտկտում էին գոմի մաքուր հատակի վրա։ Նրանք զարմացել էին, որովհետև մի տեղում այդքան շատ կովեր դեռ չէին տեսել։ Նրանք հեռացան մայրիկից և սկսեցին հետաքրքրությամբ դիտել կովերին։ Մեկ էլ ջրի խշշոց լսվեց։ Նրանց դիմացի սպիտակ խալերով կովը ախորժակով ջուր խմեց և հետո էլ իր դունչն էր լիզում։ Այնինչ կովի առջևից ոչ առու էր գնում, ոչ էլ դույլով ջուր կար դրված։ Պերճիկն ու Սալվիկը կռացան, որ լավ նայեն, բայց ոչ մի բան չտեսան։

— Կովը ջուր խմե՞ց, մայրիկ,— հարցրեց Սալվիկը։



Ծծում էին ու պոչերը պտտում։

— Իհարկե, խմեց։ Ուզո՞ւմ եք տեսնել, թե որտեղից ջուր խմեց։

Նրանք, իհարկե, ուզում էին տեսնել, շատ էին ուզում։

Երեքն էլ մոտեցան և տեսան, որ կովի առջևում, մսուրի վրա, մի երկաթե կաթսայիկ կար, մեջը մի փոքրիկ կափարիչ, իսկ կաթսայիկի տակ՝ երկաթե խողովակ։ Մայ-

րիկը ձեռքով սեղմեց կաթսայիկի կափարիչը։ Կափարիչը ցած իջավ և ջուրը խշշալով, լցվեց կաթսայիկի մեջ։

— Վա՜յ...— ուրախությունից ճչաց Սալվիկը,— ի՜նչ լավ է։

Երբ մայրիկը ձեռքը ետ քաշեց, կափարիչը ջրի տակից վերև բարձրացավ և ջուրը կտրվեց։

— Կովն իր դնչով է սեղմում կափարիչին,— ասաց մայրիկը և նրանց տարավ հորթերի բաժինը։

Նրանք մտան մի մեծ, տաք ու լուսավոր սենյակ, որտեղ մեծ-մեծ արկղներ ու ճաղաշարեր կային։ Ճաղաշարերի հետևը սպիտակ, կարմրավուն, խայտաբղետ հորթերն էին կանգնած։ Երեխաները մոտեցան ճաղերին և սկսեցին նայել հորթերին։ Այդ ժամանակ եկան ուրիշ մորաքույրներ և մեծ-մեծ դույլերից իսկական կաթը լցրին ինչ-որ լվացարանների մեջ, որոնք կախված էին պատի երկարությամբ։



Ռետինե խողովակները կրում էին...

«Այ քեզ զարմանալի բան,— մտածեց Ռուբիկը.— կաթո՞վ են լվացվելու»։

Մեկ էլ մորաքույրներից մեկը բաց արեց ճաղաշարի դուռը և սիրունիկ հորթերը վազեցին դեպի լվացարաններն ու սկսեցին լվացարանների ռետինե պտուկներից ծծել համեղ կաթը՝ ոնց որ իսկական կովի պտուկից։ Ծծում էին ու պոչերը պտտում։

Մեկ էլ Սալվիկը հարցրեց.

— Մայրիկ, իսկ ո՞ւր է նվիրած հորթը։

Մայրիկը ժպտաց։ Նա ցույց տվեց կաթ խմող հորթերին և ասաց, որ դրանցից մեկն ու մեկը կարելի է վերցնել։

— Դե ջոկենք տանենք էլի,— ասաց Սալվիկը։

Ռուբիկն աշխուժացավ։ Նա երևակայում էր, թե ինչպես ինքը հենց գետի ափին էլ կարածացնի այդ հորթին։

— Հիմա՞,— զարմացավ մայրիկը,— հիմա չի կարելի։ Անր դեռ փոքր է, մենակ կտխրի... Երեխանե՛ր, որոշել եմ հորթը բոլորովին էլ տուն չբերել։ Ես նրան կտամ կոլտնտեսությանը...

Մեկ էլ մայրիկը նայեց ժամացույցին և ասաց.

— Դե հիմա գնանք, կովերը կթելու ժամանակն է։

Երեխաները զարմացան. կեսօրին կո՞վ են կթում։ Չէ՞ որ իրենց տանը կթում են առավոտն ու երեկոյան։ Բայց մայրիկը կատակ չէր անում։ Նրանք նորից գնացին գոմը։ Ուրիշ մորաքույրներ կովերին մոտեցրել էին ռետինե խողովակներ և էլի ինչ-որ բաներ։ Մայրիկն իր ձեռքերը լվաց, ապա մաքուր սրբիչով սրբեց կովի կուրծքը և ռետինե խողովակները հագցրեց պտուկներին։ Հետո միացրեց էլեկտրական հոսանքը և կաթը պտուկից սկսեց հոսել ալյումինե մեծ անոթի մեջ։ Ռետինե խողովակները կթում էին կովերին, իսկ կովերից ոչ մեկը ոտքն էլ չէր շարժում։ Շարժեր էլ՝ ոչինչ, կաթը հեռու էր գնում և կովը թափել չէր կարող։

Զարմանալի խողովակները շուտ կթեցին կովերին. իսկ տանը տատիկը նստում էր երկար ժամանակ և ֆը՜շ հա ֆը՜շ...

Կովերի կիթը շուտ վերջացավ։

— Վա՜յ, այս ի՞նչ է,— զարմացած բացականչեց Սալվիկը։

Ռուբիկն ու Պերճիկը նայեցին Սալվիկի կողմը։ Այ քեզ բա՜ն. գոմի առաստաղի մեջ-

տեղով մի մեծ արկղ էր գալիս. կարծես թե վագոնիկ լիներ. մեջն էլ ինչ-որ բան էր լցված։

Ռուբիկը տեսավ, որ մեծ արկղը կախված է երկաթյա պարանից ու երկու փոքրիկ անիվներով սահում է նրա վրայով։

— Սրանք վագոնիկներ են, սրանցով մենք անասունների համար կեր ենք տեղափոխում,— բացատրեց մայրիկը։— Թե չէ այսքան կովի համար շալակով ինչպե՞ս բերենք։

Ռուբիկի հիացմունքին չափ ու սահման չկա. ա՜յ թե թողնեին ինքը քշեր այդ վագոնիկները։ Ռուբիկի մտքերն ընդհատվեցին, եկավ կոլտնտեսության շոֆերը՝ քեռի Աշոտը։

— Դե՛, քեռին ձեզ է սպասում,— ասաց մայրիկը,— գնացեք տուն։

Սալվիկը, Պերճիկն ու Ռուբիկը ուրախ-ուրախ գնացին քեռի Աշոտի հետ և երեքն էլ ավտոմեքենայով վերադարձան տուն։

---

# ՌՈՒՍԱԿԱՆ ԵՐԱԺՇՏՈՒԹՅԱՆ ՀԱՆՃԱՐԸ

Յ. ԲՐՈՒՏՅԱՆ
*(Արվեստագիտության թեկնածու)*

Միխայիլ Իվանովիչ Գլինկան ռուսական երաժշտության համար նույնպիսի դեր է կատարել, ինչպես Պուշկինը՝ գրականության մեջ: Նա նոր ռուսական ժողովրդական երաժշտական դպրոցի հիմնադիրն է:

Գլինկան ծնվել է Սմոլենսկի շրջանի Նովոսպասսկ գյուղում: Նրա մանկությունն ու պատանեկությունն անցել է նոր կալվածքում, ռուսական հրաշալի բնության գրկում: Նա տեսել ու ճանաչել է գյուղացիներին, շփվել նրանց հետ: Ապագա կոմպոզիտորը մանուկ հասակից ուշադրությամբ լսում էր գյուղական երգերն ու պարեղանակները, ինչպես և ճորտ երաժիշտներից կազմած փոքրիկ նվագախմբի կատարումը, որի ղեկավարն էր նրա քեռին:

«Այդ թախծոտ ու քնքուշ, բայց միանգամայն մատչելի հնչյունները ինձ անչափ դուր էին գալիս: Եվ գուցե մանկության տարիներին լսած այդ երգերն էին առաջին դրդապատճառը, որ հետագայում ես սկսեցի մշակել գերազանցապես ռուսական ժողովրդական երաժշտությունը», գրում է Գլինկան:

Տասնմեկ տարեկան Գլինկան առաջին անգամ սովորում է նվագել դաշնամուր, ապա և ջութակ: 1817 թվականի ձմռանը տղային տանում են Պետերբուրգ: Այնտեղ մի քանի տարի նա սովորում է մանկավարժական ինստիտուտին կից ազնվական գիշերօթիկ դպրոցում, միաժամանակ երաժշտության մասնավոր դասեր է վերցնում: Այդ դպրոցում ուսուցիչ էր Պուշկինի մտերիմ բարեկամ՝ դեկաբրիստ Կյուխելբեկերը: Նա և ուրիշ դասատուներ իրենց առաջադիմական հայացքներով ազդում են պատանի Գլինկայի վրա:

Այդ շրջանից է, որ Գլինկան հասարակության մեջ ճանաչվում է որպես լավ դաշնակահար: Նա սկսում է ստեղծագործել, գրում է դաշնամուրային պիեսներ, ռոմանսներ, նույնիսկ սիմֆոնիկ երկեր:



1830 թվականին Գլինկան մեկնում է արտասահման, սկզբում Իտալիա, ապա և Գերմանիա: Այնտեղ նա ծանոթանում է ուրիշ ժողովուրդների երաժշտությանը, հարստացնում է իր գիտելիքները: Չորս տարի հետո նա մտադրվում է ռուսական օպերա գրել և շտապում է հայրենիք:

Պետերբուրգում բանաստեղծ Ժուկովսկին Գլինկային առաջարկում է «Իվան Սուսանինի» թեման, որն իր հայրենասիրական բովանդակությամբ հրապուրում է կոմպոզիտորին:

Տասնյոթերորդ դարում ռուս ժողովուրդը Մինինի և Պոժարսկու ղեկավարությամբ կռվում էր օտար նվաճողների՝ լեհական պաների դեմ: Ռուսական գյուղերից մեկում գյուղացի Իվան Սուսանինն իր կյանքը զոհում է հայրենիքի փրկության համար: Լեհական

զորքերի մի խումբ ուզում է, որ Սուսանինը ցույց տա Պիտերի ճանապարհը, ռուս աշխարհազորականների տեղը: Սուսանինը նրանց տանում է անանցանելի անտառի խորքը: Այնտեղ էլ նրանք սառչում են: Սուսանինին կողմնակից են ռուս հայրենասերները. նրա աղջիկը՝ Անտոնիդան, որբուկ Վանյան, զորավար Սաբինինը և ուրիշներ:

Գլինկան այս օպերայում առատորեն օգտագործել է ռուս ժողովրդական պարզ և վճիտ երաժշտությունը:

1836 թվականի նոյեմբերի 27-ը, երբ առաջին անգամ բեմադրվեց «Իվան Սուսանինը», դարձավ ռուսական օպերայի ծննդյան օրը: Ազնվականները ծաղրում էին օպերայի բեմանն և երաժշտությունը, բայց ժողովուրդը, առաջավոր մարդիկ ցնծությամբ ընդունեցին նրա ծնունդը:

Գլինկան մտերիմ կապեր է հաստատում դեմոկրատական խավերի ներկայացուցիչների հետ:

1837 թվականին Գլինկան դառնում է Պետերբուրգի երգեցիկ կապելլայի ղեկավարը: Դրա համար նա երգիչներ է հավաքում տարբեր քաղաքներից: Կիևում նրա ուշադրությունը գրավում է երիտասարդ երգիչ Գուլակ-Արտեմովսկին: Կոմպոզիտորը երիտասարդին բերում է Պետերբուրգ, և պարապում նրա հետ: Եվ Գուլակ-Արտեմովսկին դառնում է ուկրաինական առաջին կոմպոզիտորներից մեկը:

Այս տարիներին Գլինկայի ամենանշանավոր ստեղծագործությունը «Ռուսլան և Լյուդմիլա» օպերան էր:

«Ռուսլան և Լյուդմիլա» օպերան գրված է Պուշկինի պոեմի հիման վրա: Նրա մեջ լավագույն մարդիկ բախվում են չար ու դաժան ուժերի հետ և հաղթանակ տանում:

Օպերան բեմադրվում է «Իվան Սուսանինի» առաջին ներկայացումից ուղիղ վեց տարի հետո, բայց դարձյալ տիրող խավերի շրջանում ընդունելություն չի գտնում: Հուսալքված Գլինկան թողնում է Ռուսաստանը և մեկնում արտասահման: Իսպանիայում նա լրջորեն ուսումնասիրում է իսպանական ժողովրդական երաժշտությունը և գրում «Արագոնյան խոտա» և «Գիշերը Մադրիդում» նախերգանքները:

Գլինկան վերադառնում է Պետերբուրգ և այնտեղ ստեղծում «Կամարինյան» սիմֆոնիկ ֆանտազիան: Այդ ստեղծագործության մասին Չայկովսկին ասել է. «Ինչպես փոքրիկ արմատից անում է հսկայական կաղնին, այնպես էլ «Կամարինյանից» սկիզբ է առնում ու զարգանում ամբողջ ռուսական սիմֆոնիկ երաժշտությունը»:

Գլինկան 1848 թվականից հետո մի քանի անգամ մեկնում է արտասահման: Այդ ժամանակ է նա գրում իր մի քանի ստեղծագործությունները, փորձում է նորերն էլ գրել: Սակայն 1857 թվականի փետրվարի յոթին Գլինկան մեռնում է Բեռլինում:

Նույն տարվա մայիսին ռուս մեծ կոմպոզիտորի ու ջերմ հայրենասերի աճյունը տեղափոխվում է Պետերբուրգ և թաղվում հայրենի հողում:

Գլինկայի անմահ երաժշտությունը թանկ է ամբողջ առաջավոր մարդկության համար: Մեր ժողովուրդը, աշխարհի ժողովուրդների հետ միասին, սիրով և հարգանքով է նշում հանճարեղ կոմպոզիտորի ծննդյան 150 տարին:

# ԿԱՏԱՐԵՑԵՔ ՃՇՏՈՒԹՅԱՄԲ

*Գ. ՍԱՐԳՍՅԱՆ*
*(Միլիցիայի ավագ տեսուչ)*

Մեր մայրաքաղաքը՝ Երևանը օրեցօր ավելի է մեծանում ու գեղեցկանում: Այնտեղ սկսում են երթևեկել ավելի ու ավելի շատ ավտոմեքենաներ, տրամվայներ, տրոլեյբուսներ. իսկ դա հատկապես երեխաներից պահանջում է մեծ զգուշություն:

Ամեն մեկը պետք է սովորի ճիշտ քայլել փողոցում, պահպանել փողոցային երթևեկության կանոնները: Դրանք կատարելը բոլորովին էլ դժվար չէ: Այդ կանոնները օգտակար են մարդու մեջ կարգապահության զարգացման համար, իսկ կարգապահությունը համարձակ մարդու անհրաժեշտ հատկությունն է:

Երեխաներ, հիշեցեք, որ պետք է քայլել միմիայն մայթերով և անպայման աջ կողմով: Չի կարելի խմբերով հավաքվել մայթի վրա և շարժվել իրար հետ, խանգարել ուրիշներին: Չի կարելի քայլել փողոցի մեջտեղով և կյանքը վտանգի ենթարկել:

Նալբանդյան փողոցով գնալու ժամանակ ուսանողուհի Ալիևա Բաղդավուրան սովորած քայլում էր փողոցի մեջտեղով: Հանկարծ ներքևից հայտնվեց

*Նկ. Գ. ՅԱՐԱԼՅԱՆԻ*

տրագրեքաց մի մեքենա: Ժամանակին չկարողանալով արգելակվել, մեքենան հարվածեց Բաղդավուրային և վնասվածք հասցրեց նրան:



Այն փողոցներում, որտեղ չկան մայթեր, անհրաժեշտ է քայլել փողոցի ձախ կողմով: Պետք է փողոցն անցնել միայն խաչմերուկներում գծված ուղիներով կամ այն տեղերով, որտեղ դրված է «անցում» ցուցանակը: Փողոցն անցնելիս անպայման նայեցեք դեպի ձախ և տեսնելով, որ տրանսպորտ չկա, սկսեք անցումը: Հասնելով փողոցի կենտրոնին, նորից ուշադրությամբ նայեցեք դեպի աջ և երբ մեքենաներ չկան, շարունակեցեք անցնել: Ոչ մի դեպքում փողոցը մի՛ անցեք խաչմերուկի միջև ընկած տարածությունով: Քաղաքի շատ փողոցների խաչմերուկներում դուք տեսնում եք լուսաֆորներ, իսկ այնտեղ, որտեղ լուսաֆոր չկա, դուք նայեցեք ցուցափայտը ձեռքին կանգնած միլիցիոներին: Հիշեցեք, որ երբ կարգավորող միլիցիոները կանգնած է դեպի ձեզ կրծքով կամ մեջքով, ապա նրա այդ դիրքը համապատասխանում է լուսաֆորի կարմիր լույսին, ուրեմն անցումն արգելված է: Երբ կարգավորող միլիցիոները կանգնած է դեպի ձեզ կողքով, այդ դեպքում դուք համարձակ կերպով կարող եք անցնել փողոցը, քանի որ նրա այդ դիրքը համապատասխանում է լուսաֆորի կանաչ լույսին: Երբ կարգավորող միլիցիոները ցուցափայտը բարձրացնում է վեր, նրա այդ դիրքը համապատասխանում է լուսաֆորի դեղին լույսին և նշանակում է «ուշադրություն», ինչպես տրանսպորտի, այնպես էլ հետիոտների համար: Երբ այդ ազդանշանը տալու ժամանակ դուք գտնվում եք խաչմերուկի մեջտեղը, ապա մի՛ կանգնեք, շարունակեցեք ձեր ճանապարհը, անցեք փողոցը: Իսկ երբ ազդանշանը տալու ժամանակ գտնվում եք մայթի վրա, ապա սպասեցեք մինչև այն կփոխվի:

Կան ճանապարհային շատ նշաններ էլ, որոնցից մի քանիսի նշանակությունը դուք անպայման պետք է իմանաք:

1. «Զգո՛ւյշ, հետիոտներ» նշանը եռանկյունի է, սև գույնի, դրվում է այն վայրում, որտեղ խիտ բնակչություն է լինում, հատկապես դպրոցների, գործարանների, կինո-թատրոնների, շուկաների մոտ: Նշանը պահանջում է փողոցում քայլողներից, ինչպես նաև տրանսպորտ վարողներից շատ զգույշ լինել:

2. «Զգուշացիր տրանսպորտից» ցուցանակը դրվում է շենքերի մուտքերի առաջ, կից և գլխավոր փողոցների հատման կետերում, որտեղից սպասվում է մեքենաների հանկարծակի անցուդարձ:

Անհրաժեշտ է տրամվայ, տրոլեյբուս և ավտոբուս նստել միմիայն հետևի դռնից և իջնել առջևի դռնից: Երբ որևէ մեկը խախտի այդ կարգը, տրանսպորտը ժամանակին չի կարողանա շարժվել:

Տրանսպորտի ընթացքի ժամանակ նստել կամ իջնել չի կարելի: Դա վտանգավոր է:

Գրիբոյեդովի դպրոցի աշակերտ Զորիկ Մնացականյանը Տերյանի փողոցում, ավտոբուսի ընթացքի ժամանակ, կպչում է նրա հետևից և քիչ է մնում վտանգի ենթարկի իր կյանքը, իսկ 19-ամյա Մ. Պետրոսյանը ընթացքի ժամանակ տրամվայ նստելիս, սայթաքում է, ընկնում վագոնի տակ և մահանում:

Երեխանե՛ր, տրամվային, տրոլեյբուսին և ավտոբուսին սպասեցեք միայն մայթի վրա: Մի՛ անցնեք փողոցի այն մասը, որտեղով տրանսպորտն է երթևեկում: Տրամվայի, տրոլեյբուսի և ավտոբուսի գալուց հետո միայն, առանց շտապելու, զգուշությամբ մոտեցեք և հերթով նստեցեք, չխանգարելով ուրիշ ուղևորների:

Հաճախ կարելի է տեսնել այնպիսի աշակերտների, որոնք խախտում են փողոցային երթևեկության կանոնները: Թելմանի անվան դպրոցի աշակերտներ Ռուբիկ Խաչատրյանը և Յուրիկ Պողոսյանը, Վորոշիլովի դպրոցի աշակերտ Ռաֆիկ Մարտիրոսյանը, Նալբանդյանի անվան դպրոցից Ռազմիկ Վարդապետյանը, Շիրվանզադեի դպրոցի աշակերտ Բորիս Թերլեմեզյանը և ուրիշներ:

Որպես կանոն, փողոցը պետք է անցնել կանգնած տրամվայի միայն առջևից, որպեսզի տեսնեք հակառակ կողմից եկող տրամվայը: Ընդհակառակը, կանգնած ավտոմեքենայի, ավտոբուսի ու տրոլեյբուսի միայն հետևից պետք է անցնել փողոցը, որպեսզի նկատեք նրա կողքով անցնող տրանսպորտը:



Փողոցային երթևեկության կանոնների պահպանությունը, վարքի կանոնների մեջ խոշոր տեղ է գրավում: Կան սահմանված մի շարք որոշումներ, որոնք պետք է դուք ճշգրիտ կիրառեք, հարգեք սոցիալիստական համակեցության կանոնները:




Երկիրը երկու տարբեր շարժում ունի. օրը մի անգամ պտտվում է իր առանցքի և մի տարվա ընթացքում՝ արևի շուրջը։ Երկրի առաջին շարժման հետևանքով տեղի է ունենում ցերեկվա և գիշերվա իրար հաջորդելը, իսկ երկրորդով փոխվում են տարվա եղանակները։

Եթե երկիրը պտտվեր արևի շուրջն այնպես, որ նրա պտտման առանցքն արևի ճառագայթների նկատմամբ շարունակ ուղիղ անկյուն կազմեր, ապա երկրի վրա տարվա եղանակների ոչ մի փոփոխություն չէր լինի։ Դրա հետևանքով երկրագնդի բոլոր վայրերում, բացի բևեռներից, գիշերը և ցերեկը հավասարապես 12 ժամ կլինեին։

Իրականում արևի ճառագայթները տարվա մեջ միայն երկու անգամ են երկրի վրա ընկնում այնպես, որ նրա պտտման առանցքի նկատմամբ կազմում են ուղիղ անկյուն. մեկ մարտի քսանմեկին, մեկ էլ սեպտեմբերի քսաներեքին։ Այդ նշանակում է, որ տարվա ընթացքում երկու անգամ՝ գարնանը և աշնանը ցերեկն ու գիշերը տևում են տասներկուական ժամ, իսկ մնացած ժամանակ կամ գիշերն է երկար լինում, կամ ցերեկը։ Տարվա եղանակների փոփոխությունը տեղի է ունենում այն պատճառով, որ նրա պտտման առանցքը որոշ թեքություն ունի այն ուղու նկատմամբ, որով երկիրը շարժվում է արևի շուրջը։ Հաստատված է, որ երկրի պտտման առանցքի թեքության հետևանքով արևը միատեսակ չի լուսավորում ու տաքացնում երկրի մակերեսի տարբեր շրջանները։ Այդ պատճառով առաջանում են՝ ձմեռ, գարուն, ամառ, աշուն եղանակները։

Եթե երկրի պտտման առանցքը և հատկապես նրա հյուսիսային մասը թեքված է դեպի արևի ճառագայթների ուղղությունը, իսկ հարավային մասը՝ ճառագայթների ուղղությունից հեռու է, հյուսիսային մասը շատ ավելի ջերմություն և լույս է ստանում, քան հարավայինը։ Երկրի այդպիսի դիրքի դեպքում հյուսիսային կիսագնդում կլինի ամառ, իսկ հարավային կիսագնդում՝ ձմեռ և ընդհակառակը։ Եթե երկրի պտտման առանցքը թեքված է դեպի արևի ճառագայթները հարավային մասով, հարավային կիսագընդում կլինի ամառ, իսկ հյուսիսային կիսագնդում՝ ձմեռ։

Հաստատված է, որ մարտի քսանմեկին և սեպտեմբերի քսաներեքին երկրի հյուսիսային և հարավային կիսագնդերը արևի ճառագայթների նկատմամբ՝ միատեսակ դիրք են ունենում, այդ ժամանակ հյուսիսային կիսագնդում սկսվում է գարունը, իսկ հարավային կիսագնդում՝ աշունը։ Դա առաջանում է նրանից, որ երկրի պտտման առանցքն աստիճանաբար հյուսիսային մասով թեքվում է դեպի արևի ճառագայթները, իսկ հարավային մասով աստիճանաբար հեռանում դրանցից։

Հունիսի քսաներկուսին երկրի հյուսիսային կիսագունդը արևից շատ լույս ու ջերմություն է ստանում, իսկ հարավայինը՝ քիչ։ Դրա հետևանքով հյուսիսային կիսագնդում սկսում է ամառ, իսկ հարավային կիսագնդում՝ ձմեռ։ Սեպտեմբերի քսաներեքից սկսած երկրի պտտման առանցքն արևի ճառագայթների նկատմամբ հյուսիսային մասով հեռանում է, իսկ հարավային մասով մոտենում։ Դրա շնորհիվ հյուսիսային կիսագնդում սկսվում է աշունը, իսկ հարավայինում՝ գարունը։ Դեկտեմբերի քսաներկուսին հյուսիսային կիսագնդում սկսվում է ձմեռը, իսկ հարավային կիսագնդում՝ ամառը։

Երկրի պտտման հետ կապված տարվա չորս եղանակի առաջացման իսկական պատկերացումը կարելի է դիտել պլանետարիի էկրանի վրա։

Ա. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

# ԳՐՔԵՐԻ ԱՇԽԱՐՀՈՒՄ

## «ԿԼՈՐ ՏԱՐԻ»

Մենք շուռ ենք տալիս գիրք-օրացույցի էջերը։ Ի՜նչ լավ պատմվածքներ, հեքիաթներ, ոտանավորներ և գրույցներ կան այնտեղ։ Եվ այդ բոլորը ամբողջ տարվա մասին են...

Սաստիկ ցուրտ է, սառնամանիք։ Ձմեռը բարկացել է. նա հալածում է ամենքին։ Առվակները սառչում են, կենդանիներն ու թռչունները մտնում են իրենց թաքստոցներն ու սպասում գարնանը։ Ձմեռը զայրացած է. բայց ո՞վ է նրանից վախեցողը, երեխանե՞րը։ Նրանք տաք շորեր են հագել և դուրս եկել խաղալու։ Ձմեռը ստիճանաբար խաղաղվում է։ Գարունը հեռու չէ... Այսպիսին է ռուս մեծ մանկավարժ Ուշինսկու «Պառավ ձմեռվա գժությունները» պատմվածքը, որը տեղավորված է գիրք-օրացույցի «Ձմեռ» բաժնում։

Իսկ ո՞վ չի կարդացել Հովհաննես Թումանյանի «Դպրոցի ճամփան», Մայակովսկու «Ինչն է լավը, ինչն է վատ» ոտանավորները։ Ինչքա՜ն լավ են նկարագրված ուսումնասեր և կարգապահ երեխաներն այդ ոտանավորներում և ինչքա՜ն ծիծաղելի են ծույլերը, փնթիները, կեղտոտները...




«Տոնածառը Սոկոլնիկիում» պատմվածքում Ա. Կոնոնովը ցույց է տալիս, թե երեխաները հունվարյան տոներին ինչպիսի երջանիկ ժամեր են անցկացնում մեծ Իլյիչի հետ, իսկ «Մեր բանակի ծնունդը» նրանց պատմում է, թե ինչպես քաղաքացիական կռիվների օրերին, փետրվարի 23-ին ծնվեց մեր երկրի արթուն պահապանը՝ Սովետական հզոր Բանակը...

«Գարուն», այսպես է վերնագրված գիրք-օրացույցի երկրորդ բաժինը։ Սքանչելի է Արարատյան դաշտի գարունը։ Հայաստանի առաջին ծաղիկը բացվում է այնտեղ։ Բարձր բարդենու կատարին բույն է շինում գարնան ավետաբերը՝ արագիլը։ Սկսում են ծաղկել ծառաստանները։ Շուրջը սպիտակ, վարդագույն ծաղիկների ծով է, հեքիաթային մի ծաղկանոց, որի մեջ տարածվել են մեր գյուղերը։ Իսկ ինչքա՜ն գեղեցիկ է այդ գյուղերի երջանիկ կյանքն ու աշխատանքը։ Այս բոլորի մասին է պատմում Հ. Մկրտչյանն իր ակնարկում։ Գարնանն են նվիրված Ղ. Աղայանի «Հիշողությունը», Խ. Ապոր «Գարունը», Արաքսի «Առաջին ծաղիկները»։

1953 թվականի մարտի 5-ին մահացավ Ի. Վ. Ստալինը։ Վ. Դավթյանի «Մի մոսկվացի փոքրիկ աղջիկ» ոտանավորը պատկերում է փոքրիկ աղջկա մեծ վիշտը առաջնորդի մահվան առթիվ։

Ապրիլի 22-ը Վ. Ի. Լենինի ծննդյան օրն է։ Ա. Ի. Ուլյանովայի հիշողությունները պատմում են Վոլոդյայի մանկության և դպրոցական տարիների մասին։

Ահա և մայիսը, խաղաղության, ծաղիկների, ուրախության ամիսը։ Տոնական ցնծություն։ Մեծերի հետ փողոց են դուրս եկել և մանուկները։ Այդ առթիվ էլ գիրք-օրացույցում հետաքրքիր նյութ կարելի է գտնել։

Անցնում է գարունը. արդեն շոգ ամառ է։ Երեխաները հանգստանում են ճամբարում, բնության գրկում, ծաղիկների ու կանաչի մեջ։ Սքանչելի է հայրենի բնությունը, ուրախ է երեխաների կյանքը։ Այս է նկարագրում Սարմենը «Ծաղկաձորում» բանաստեղծության մեջ։ Վ. Անանյանն էլ երեխաներին տանում է հայրենի անտառներն ու լեռները՝ մայր այծյամի հետևից...

Իջնում է աշունը։ Երեխաները նոր ուժ առած վերադառնում են դպրոց։ Նրանք ծաղիկներով են։ Որքա՜ն ժպիտ ու խնդություն կա։ Դպրոցի բակում եռուզեռ է, դպրոցականներն ուրախ հարցուփորձ են անում իրար, կատակում, երգեր երգում, խաղում, մինչև որ հնչում է զանգը և սկսվում առաջին դասը։ Դպրոցականին ծանոթ այս տեսարանը պատկերել է Հ. Հայրապետյանը։

Գիրք-օրացույցի մեջ շատ ուրիշ գործեր էլ կան՝ նվիրված մեր մեծ հայրենիքին, ժողովուրդների բարեկամությանը, ծաղկող Ուկրաինային, խաղաղությանը, մեր հայրենիքի շինարարությանը, նախադպրոցականների կյանքին և այլն։

Այդ գրքում հրաշալի ոտանավորներ ու պատմվածքներ ունեն՝ Ն. Զարյանը, Հ. Շիրազը, Խ. Գյուլնազարյանը, Ս. Կապուտիկյանը, Վ. Վարդանյանը և շատ ուրիշներ։ Նկարիչներ Գ. Բաշինջաղյանի, Գ. Գյուրջյանի, Հ. Ռուխկյանի, Վ. Թևանյանի, Մ. Բաղդասարյանի և ուրիշների նկարները ավելի գեղեցիկ են դարձնում ժողովածուն։

Գիրք-օրացույցը հայերեն հրատարակվում է առաջին անգամ և կոչվում է «Կլոր տարի»։

Լ. ԱՍՄԱՐՅԱՆ

# ՀԵՏԱՔՐՔԻՐ ԺԱՄԱՆՑ

## ԿՐՈՍՎՈՐԴ

### ՈՒՂՂԱՀԱՅԱՑ

1. Կենտրոնական Ասիան ուսումնասիրող նշանավոր ռուս ճանապարհորդ, 2. Ժողովրդական դյուցազներգություն, 4. «Երկու կապիտան» գրքի հեղինակը, 5. Սովետական հռչակավոր գիտնական, բնության վերափոխիչ, 8. Գետ Աֆրիկայում, 10. Սովետական նշանավոր օպերային երգիչ, 11. Հնագույն պետություն, 12. Երաժշտական մեծ ստեղծագործություն, 13. «Իշխան Իգոր» օպերայի հեղինակը, 15. Քաղաքացիական պատերազմի հերոս, 16. Գետ Եվրոպայում, 20. «Օրեր ու գիշերներ» վիպակի հեղինակը, 21. Բալթիկ ծովը թափվող գետ, 22. Թերակղզի Հյուսիսային Ամերիկայում, 27. Հայկական կինոնկար, 28. Պատմական ճածանավ:

### ՀՈՐԻԶՈՆԱ

3. Չայկովսկու սիմֆոնիկ ստեղծագործություններից, 6. Երգեցիկ խումբ, 7. Կղզի Միջերկրական ծովում, 9. Չեխ մեծ կոմպոզիտոր, 14. Նավահանգիստ Իսպանիայում, որտեղից Մագելլանը դուրս եկավ շուրջերկրյա ճանապարհորդության, 15. Ն. Վ. Գոգոլի վիպակներից, 17. Ադրբեջանական սովետական նշանավոր կոմպոզիտոր, 18. Ռուս նշանավոր երաժշտական քննադատ, 19. Քաղաք՝ Էստոնիայում, 23. Մայրաքաղաք Լատինական Ամերիկայում, 24. Երիտասարդական ամսագիր, 25. Սովետական ռեսպուբլիկայի մայրաքաղաք, 26. Ղ. Աղայանի բանաստեղծություններից, 29. Հայ մեծ կոմպոզիտոր-երաժշտագետ, 30. Սովետական նշանավոր նկարիչ, «Վ. Ի. Լենինը Սմոլնիում» նկարի հեղինակը, 31. Միսսիսիպիի վտակներից:



*Կազմեց՝ Գ. ՄԱՆՈՒԿՅԱՆ*



## «ԾԱՂԻԿՆԵՐ»

### (ՉԱՅՆՎՈՐԴ)

*1. Գարնան առաջին ծաղիկ, 2. Դեռ չբացված ծաղիկ, 3. Ծաղիկ, որի անվամբ է կոչվում հայ գրողներից մեկը, 4. Ծաղկի վարսանդի մի մաս, 5. Վառ նարնջագույն ծաղիկ, 6. Զանգի նման ծաղիկ, 7. Ծաղիկների հավաքածու, 8. Չթառամող ծաղիկ, 9. Ծաղիկ՝ «գարնան գուշակ», 10. Կարմիր թերթիկներով ծաղիկ:*

*Կազմեց՝ Հ. ԽՈՒԴՈՅԱՆ*

## ԽԱՂ ՑԱՏԿՈՒՄՆԵՐՈՎ

*Գուրգենն ու Կարոն հրապարակում իրարից մի քայլ հեռավորության վրա և զուգահեռ, հորիզոնական դիրքով շարեցին քսանական փայտիկ: Այս փայտիկների շարքերի վերջերում դրեցին ֆաներայից պատրաստած մեկական խողովակ 60 սանտիմետր տրամագծով և մեկ մետր երկարությամբ:*

*— Լավ է,— ասաց ջոկատավարը,— միայն փայտիկները պետք է ունենան մատի հաստություն և կես մետր երկարություն:*

*— Դե լավ, սկսենք խաղալ:*

*— Օղակնե՛ր, շարվեցե՛ք,— հրահանգեց Կարոն:*

*Առաջին և երկրորդ օղակները խորությամբ շարվեցին փայտիկների մի կողմում, իսկ երրորդ և չորրորդ օղակները՝ մյուս կողմում:*

*Գուրգենն ու Կարոն կանգնեցին օղակների առաջ և այնտեղից մի ոտքով ցատկելով փայտիկների վրայով, անցան խողովակների միջով:*

*— Այժմ խաղում ենք բոլորս: Որ շարքի պիոներներն արագ կատարեն և շուտ շարվեն մյուս կողմում, նրանք էլ կհաղթեն,— ասաց Կարոն:*

*— Զգույշ եղեք, ցատկումների ժամանակ փայտիկներին չդիպչեք,— ավելացրեց Գուրգենը:*

*— Ուշադրությո՛ւն, ցատկումով մա՛րշ...*

*Եվ խաղն սկսվեց, որը մեծ հաճույք պատճառեց երեխաներին:*



*— Լավ ես մտածել, Սարգի՛ս,— ասացին դպրոցի մյուս ջոկատավարները.— այս խաղը սիրով կխաղան նույնիսկ 7-րդ դասարանցիները:*

Վ. ՊԵՏՐՈՍՅԱՆ

## ՀԱՆԵԼՈՒԿՆԵՐ

Ձու է ածում ավազում,
Ձիուց արագ է վազում,
Ինքը հսկա մի թռչուն,
Թևեր ունի՝ չի թռչում:

———

Լողան ունի, թև չունի,
Բերան ունի, ձայն չունի,
Ջրի մեջ նա կցատկի,
Ջրից հանես՝ կսատկի:

Մորթի ունի բծերով,
Կարմիր ու սև գծերով,
Նրա ցեղից է կատուն:
Նա մարդկանց է հոշոտում:

———

Մարդկանց խոսքերը կրկնում է, ասում,
Բայց չի հասկանում, թե ինչ է խոսում:

ԱՆ. ՇԻՐՈՅԱՆ

———

## ՊԱՏԱՍԽԱՆՈՒՄ ԵՆՔ

Մեր ամսագրի 1954 թվականի 3-րդ համարում տպագրված «Հետաքրքիր ժամանցի» պատասխաններն են.

ՁԱՅՆՎՈՐԴ 1. Արջ, 2. Ջայլամ, 3. Մուկ, 4. Կապիկ, 5. Կենգուրու, 6. Ուլ, 7. Լուսան, 8. Նապաստակ, 9. Կով, 10. Վարազ, 11. Ջամբիկ, 12. Կզաքիս, 13. Սագ, 14. Գոմեշ, 15. Շուն, 16. Նառ, 17. Ռնգեղջյուր:

### «ԿԱՐՈ՞Ղ ԵՍ ԱՍԵԼ»

1. Հավերը, ճնճղուկները և մի քանի այլ թռչուններ փոքրիկ քարեր են կուլ տալիս, որ մարսողությունը ճիշտ կատարվի, որովհետև այդ քարերը աղացի դեր են կատարում:

2. Վախենալու ժամանակ ձին փռնչացնում է: Այդ ձևով նա մաքրում է քիթը՝ հոտով իմանալու, թե որ կողմից և ինչպիսի վտանգ է սպառնում:

3. Բուի թռիչքի ժամանակ աղմուկ չի լսվում, որովհետև նրա մարմինը ամբողջովին ծածկված է աղվափետուրներով:

4. Բադերը և սագերը ջրից դուրս են գալիս «չոր», որովհետև փետուրները օծում են սեփական ճարպով:

5. Ձկները շնչում են խռիկներով. ջրի մեջ լուծված թթվածինը ջրի հետ անցնում է խռիկները, որից հետո արյան մեջ: Այդ պատճառով նրանք կարողանում են շնչել միայն ջրի մեջ լուծված թթվածինը:

6. Կատվի աչքերը փայլում են, որովհետև նրանք համեմատաբար ավելի թույլ են բեկում լույսի ճառագայթները: Դրանք ուժեղ կերպով արտացոլվում են





և ցցված փնչով աչքից դուրս գալով տեսանելի են դառնում։

*ՃԻՇՏ ՊԱՏԱՍԽԱՆԵԼ ԵՆ*

Լաուրա և Լուարա Նահատակյանները (Վրացական ՍՍՌ), Մարի և Ժորժետ Սաֆարյանները, Գ. Այունցը, Ռ. Դավրյանը (Դիլիջան), Ս. Նավասարդյանը, Ռ. Հակոբյանը (Իջևան), Ջեմմա և Ջուլիետա Մինասյանները, Լ. Ջեներյանը (Լենինական), Ռ. Հովսեփյանը, Վ. Հովհաննիսյանը, Ս. Դանիելյանը, Թ. Թովմասյանը, Ռ. Հովհաննիսյանը (Երևան), Լ. Աղեկյանը (Կիրովական), Դ. Հարությունյանը (Ապարան) և ուրիշները։

---

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ


1. Խաղաղության ծառուղին — Մ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
2. Գուրգենի հինգը — Լ. ՄԵՀՐԱԲՅԱՆ . . . 2
3. Խնձորը — Ս. ՄՈՒՐԱԴՅԱՆ . . . . . . 4
4. Ոչ հազվագյուտ նշան — Մ. ԱՐՄԵՆ . . . 4
5. Անմոռուկը — ՀՌ. ՊՈՂՈՍՅԱՆ . . . . . 7
6. Ճռռանակի երգ — Ռ. ՂԱՐԻԲՅԱՆ . . . . 8
7. Բարեկամության ալբոմը — Ս. ՍԱՐԳՍՅԱՆ . 8
8. Աշոտի նկարը — Ս. ԽԱՐԱՋՅԱՆ . . . . 10
9. Անհասցե նամակը — Ա. ՇԱՀԻՆՅԱՆ . . . 11
10. Քեռու պես — Ս. ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ . . . . 12
11. Աշխատանքի հերոսը — Մ. ԼԵԲԱՆԻՁԵ . . 13
12. Մոր խրատը: Կացինը — Հ. ՍԵՎԱՆ . . . 18
13. Դեպի Հայաստանի տեսարժան վայրերը — ԱՐ. ՕՀԱՆՅԱՆ . . . . . . . . . . . 18
14. Խավարասեր հսկան — Կ. ՉՈՒԿՈՎՍԿԻ . . 20
15. Ֆերմայում — Խ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ . . . 23
16. Ռուսական երաժշտության հանճարը — Յ. ԲՐՈՒՏՅԱՆ . . . . . . . . . 25
17. Կատարեցեք ճշտությամբ — Գ. ՍԱՐԳՍՅԱՆ . 26
18. Տարվա եղանակները — Ա. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ 28
19. Գրքերի աշխարհում . . . . . . . . 29
20. Հետաքրքիր ժամանց . . . . . . . . 30
21. Մեր օրացույցը





*Խմբագիր՝* ՏԱԼՅԱՆ Վ.

*Խմբագրական կոլեգիա՝* ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԽԱՉԱՏՐՅԱՆ Հ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ., ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՕՀԱՆՅԱՆ Ա.

„Пионер“ на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Маркса 21.

*Հասցեն՝ Երևան, Մարքսի փողոց № 21, հեռախոսներ՝ 2-44-83, 2-59-06*

*ՎՖ 10676։ Պատվեր 651։ Տիրաժ 5000։ Տպագրական $2^1/_4$ մամուլ։ Ստորագրված է տպագրության 26/V 1954 թ.։*

*Գլխհրատի № 1 տպարան, Երևան, Ալավերդյանի փող. № 65։*



# ՄԵՐ ՕՐԱՑՈՒՅՑԸ



**Դանիական Գորկին**

Տասնչորս տարեկան մի գանգրահեր պատանի կիսամութ նկուղում թեքված կոշկակարի դազգահի վրա կոշիկի ներբանին մեխեր է խփում: Երբեմն մեխը ծռվում է և այդ ժամանակ դիմացը նստած ճաղատ վարպետը ձեռքի մուրճով խփում է պատանու կրծքին.

— Քնա՞ծ ես, ինչ է:

Բայց պատանին բոլորովին էլ քնած չէ: Նա մտածում է երեկոյան կարդացած գրքի մասին, որը կիսատ է մնացել, ընդհատվել ամենահետաքրքիր տեղում: Տեսնես ի՞նչ եղավ իշխանուհուն... Ու պատանին աշխատում է գուշակել գրքի վերջը: Հետո նա երազում է մի այդպիսի գիրք գրել:



Անցան տարիներ: Փոքրիկ Մարտինը գրող դարձավ և սկսեց գրքեր գրել նկուղների մարդկանց մասին: Նրա անունը հռչակվեց Դանիայում, իսկ հետո նա հայտնի դարձավ ամբողջ աշխարհին:

Մարտին Անդերսեն-Նեքսեն ծնվել է 1869 թվականի հունիսի 26-ին Դանիայի մայրաքաղաք Կոպենհագենի բանվորական թաղամասում:

Մարտինը հինգ-վեց տարեկան էր, որ սկսեց աշխատել: Նա բերբեր էր բաժանում, տաշեղներ հավաքում ու վաճառում: Երբ մի քիչ մեծացավ սկսեց բատրակություն անել, իսկ հետագայում կոշկակարություն ու քարտաշություն էր անում:

Դեռ փոքրուց նա շփվեց աշխատավոր խավերի հետ, տեսավ նրանց ծանր կյանքը, իսկ երբ գրող դարձավ, Մաքսիմ Գորկու նման եղավ աշխատավոր մարդկանց երգիչը: Իզուր չէ որ Անդերսեն-Նեքսեին դանիական Գորկի են ասում:

Մարտին Անդերսեն-Նեքսեն բազմաթիվ գրքեր է գրել: Նրա պատմվածքներն ու վեպերը շատ լեզուներով են թարգմանված: Նեքսեի «Պելլե նվաճողը», «Դիտտեն մարդկային զավակ է», «Զգրավված տեղերի ուղևորները», «Կարմիր Մարտեն» և ուրիշ շատ գործեր հայտնի են ամբողջ աշխարհում:

Մարտին Անդերսեն-Նեքսեն ֆաշիզմի ու պատերազմի հրձիգների դեմ եռանդուն պայքարողներից մեկն է: Նա Սովետական Միության ու մեր գրականության բարեկամն է:

Այս տարի ամբողջ աշխարհի աշխատավորությունը կնշի մեծ գրողի ծննդյան 85-ամյակը:

**Հանճարեղ երգիծաբանը**

Անցյալ դարի 70—80-ական թվականներին արևմտահայերի վիճակն անտանելի դարձավ: Առանձնապես թշվառ դրության հասան աշխատավոր մարդիկ: Նրանց այդ վիճակին հասցրին մի կողմից սուլթանական ռեժիմը, մյուս կողմից հայ ֆեոդալները ու բուրժուաները: Արևմտահայերի այդ տարիների կյանքի բոլոր կողմերը արտացոլվել են հայ հանճարեղ երգիծաբան Հակոբ Պարոնյանի ստեղծագործություններում:

Պարոնյանը ծնվել է 1841 թվականին Ադրիանապոլսում: Գրել սկսեց նա վաղ հասակում, բայց ընթերցողներին հայտնի դարձավ Կոստանդնուպոլսում, երբ աշխատակցեց «Մեղու» ամսագրին: Հետո նա հրատարակեց նախ «Թատրոն», ապա «Խիկար» ամսագրերը, որոնց էջերում էլ լույս ընծայեց իր երգիծական գործերը: Այդ գործերում նա ծաղրի էր ենթարկում բռնությունն ու հետամնացությունը, ֆեոդալներին ու հոգևորականներին:



Պարոնյանը թերությունների վրա լաց լինելն ամենամեծ թերությունն էր համարում: Նա գտնում էր, որ պետք է պայքարել ծիծաղի միջոցով:

Հակոբ Պարոնյանը մեռավ 1891 թվականի հունիսի յոթին աղքատության մեջ, օրվա հացի կարոտ լինելով: Մի մարդ, որ իր «Ատամնաբույժն արևելյան», «Պաղտասար աղբար», «Մեծապատիվ մուրացկաններ», «Հոսհոսի ձեռատետրը», «Միծաղը», «Պտույտ մը Պոլսո թաղերուն մեջ», «Ազգային ջոջեր» և այլ գործերով կարող է դասվել Մոլիերի, Շչեդրինի և Գոգոլի կողքին:

Միայն մեզ մոտ է, որ Հակոբ Պարոնյանն ստացավ իր արժանի գնահատականը և նրա գործերը դարձան համաժողովրդական սեփականություն:



Պատանի նկարիչը

Ֆոտոէտյուդ՝ Ա. ՋԱԼԱԼՅԱՆԻ